

## ՀԽՍՀ Գերագույն խորհրդի նախագահության ՀՐԱՄԱՆԱԳԻՐԸ 1918 թվականի մայիսի 28-ը հայկական պետականության վերականգնման օր ճանաչելու մասին

Հայկական ԽՍՀ Գերագույն խորհրդի նախագահությունը որոշում է.

1. 1918 թվականի մայիսի 28-ը ճանաչել Հայկական պետականության վերականգնման օր:
2. Եռագույն (կարմիր-կապույտ-նարնջագույն) դրոշը համարել հայկական ազգային խորհրդանիշ:

**ՀԽՍՀ Գերագույն խորհրդի նախագահության նախագահ՝**
**Հ. ՈՍԿԱՆՅԱՆ**

**ՀԽՍՀ Գերագույն խորհրդի նախագահության քարտուղար՝**
**Ն. ՍՏԵՓԱՆՅԱՆ**

28 մայիսի 1989 թվականի, ք. Երևան

## Այս համարում 5. 89



ՀՈՎՀԱՆՆԵՍ ՂՈՒԿԱՍՅԱՆ

# ԱՎԱՐԱՅՐԻ ԴԱՇՏՈՒՄ

հատված «Րաֆֆի» կենսագրական վիպերգությունից

«Նովաւ և դաշտն Աւարայրի պայծառացեալ ծաղկալից լինի, ոչ յանձրևաբեր ամպոց, այլ ի սուրբ և յարյունաբուխ վկայից ցանեալ և ցրուեալք ոսկերք սրբոց, այլ պսակք սրբոց ...» **ԵՂԻՇԷ**

Արեգակը բռնկվել էր կրտսեր Մասիսի կրծքին և թափանցիկ վարդամշուշում ընդրա սուր գագաթը զուգել ավագ Մասիսի ձյունափառ լուսապսակով: Հյուսիս-արևելքում, քսան կիլոմետրի վրա պատմական Արտագի Մակու քաղաքն էր, իսկ մի քանի քարընկեց վարում Թադեի վանքըն էր խաչակիր վեղարներով:

Հասնելով մետաքսափայլ նոսր կանաչով ծածկված բլրագագաթին գտնվող փոքրիկ մատուռին՝ նրանք վայր իջան ձիերից: Հինգ օր վանքի խավար ախոռատանը փակված Կապուտիկն իր թրթռուն, վարդագույն ռունգերով ագահաբար շընչում էր լեռնային սառն օդն ու փռնչալով դոփում վաղորդյան շաղով պատած սըլկուն կանաչը:

Հազար ութ հարյուր տարի էր, ինչ աշխարհը գիտեր, որ այստեղ են հանգչում հայոց Սանատրուկ կռապաշտ թագավորի դուստր, Քրիստոսին հարսանցյալ, գտցե և առաջին քրիստոնյա հայուհին՝ Սանդուխտ կույսը: Նրան նահատակել էր տը-



վել հարազատ հայրը՝ ի հաճույս Արամազդա և Վահունյաց կուռքերի, այն օրերին, երբ ս. Թադեոսը, նույնպես հալածական, իր այծամազից հյուսված պարեգոտի փեշերը հողմերին տված, խաչն ի ձեռին անցնում էր այս վայրերով։ Բայց այժմ, դարեր հետո, երբ հաղթանակել և ապրում էր նահատակ կույսի աննյութական երազանքը, և չկար, կործանվել էր հայոց թագավորությունը՝ իր փոխարեն բերելով ստրկության ծանր լուծը՝ նահատակուհու լուսափայլ գեղեցկությանը աղոթելիս, հայ ուխտավորները անձկագին մի տենչանքով էին պատկերում նաև երբեմնի կռապաշտ արքային և այլևս չէին անիծում նրա խաչամերժ դաժանությունը, քանզի նա, այնուամենայնիվ, հայոց հզորության, հայոց անկախության ծիրանակիրն էր եղել։ Այս նույն խոհերով էին տարված և այդ օրվա երկու ուխտավորները։ Նրանց թվում էր, որ հոր և դստեր կռապաշտ ու քրիստոնյա հոգիները այլևս հաշտվել են իրար հետ՝ հանուն իրենց տարաբախտ հաջորդների սրբազան երազանքի։

Հաշտարարական այդ խոհերով տարված՝ նրանք լռելյայն դուրս եկան մատուռից և հեծան ձիերը։ Բլրի բարձունքից նրանց առջև փռված էր Ծավարշանա՝ Ավարայրի դաշտն իր նահատակաշունչ խաղաղությամբ։

Շահբազը նկատել և կիտած հոնքերով զննում էր խզակոթի խորունկ քերծվածքը՝ անգիտանալով, որ այդ պատահել է Թոռունի ձորում ավազակ քրդերի հետ մարտնչելու պահին։ Կապուտիկի վրա քարացած Հակոբին թվում էր, որ լեռնային մեղմաշունչ զեփյուռը իր հետ բերում է դարերի դեռևս չհանդարտված ելևէջող հնքը, և այգաբացի մերթընդմերթ բռնըկվող լուսախաղերում նրան տեսլանում էին կատակոմբներից բռնի դուրս քաշված, նիզակախոց ընկնող և փշեպսակ խաչյալ վկաներ, որոնք ներում էին իրենց նենգիչներին, և, ապա, սպառազեն քաջարանց գնդեր, որ քրտնամխած իրենց նժույգներով սուրում էին ճակատագրական այդ դաշտի միջով՝ արյամբ սրբագործելու տղմուտի փոխված, պղծված ալիքները հարազատ գետի՝ ի սեր Հավատի և Հայրենիքի...

— Իջնենք,— խզված ձայնով դարձավ նա Շահբազին՝ խորունկ երազից արթնացողի պես։

— Վա՞նք,— աչքը քերծվածքից չկըտ-

րելով ասաց Շահբազը:

— Ի՞նչ վանք: Ավարայր չպիտի՞ իջնեինք:

— Խա, խա, էթյաս ենք, բալա, էլ ընչի՞ ես մռութ անելի,— վերջին անգամ խըզակոթի «վերքին» նայելով պատասխանեց Շահբազը, գայրույթից թքեց, և անըկդարը ուսը գցելով հետևեց նրան:

Սլկուն բլուրից ձիերը իջնում էին համարյա սահելով. լանջագոգերում խաչքարեր կային, իսկ դաշտավայրը ասես ցողված էր արյան շիթերով. կակաչն էր իշխում, անմոռուկների օրորանքի վրա, զեփյուռի թևին զիգզագում էին թիթեռնիկները, ձիերը փռնչում էին թունդ սեզաբույրից: Նրանք գնում էին Շավարշանա դաշտով՝ սանձերը թողած, գնում էին դեպի Տղմուտը, որ գալարվելով հոսում էր դեպի Թաղեի ձորը: Մատուռից մի քանի վերստ դեպի հյուսիս ընթանալուց հետո ձիերի պայտերը սկսեցին զընգալ: Շավարշան քաղաքի ավերակներն էին, որոնք ծածկել էր հորդած կանաչը, դաշտն ասես մխում էր գոլորշիացումից, սակայն քիչ հետո նրանք նկատեցին իրական ծխի բարակ պպաններ, որ գալարվում էին հյուսիս-արևմուտքում:

— Կոխ-Բուլաղն ի,— ասաց Շահբազը,— խայի գեղ ի, իսկ էն մեկելը՝ Կարագիադինն ի. տեսնե՞ս, բալա:

Հակոբը կկոցեց կարմրած աչքերը.

— Նախճվանա կողմի՞նը:

— Խա, խա, դյաղ թյուրքեր են ապրելի մկա, առաջ խայու գեղ էր:

Նրանք երկու անգամ անցան ճյուղավորվող Տղմուտը, որ այդ կողմերում բավականին խորն էր, և Կոխ-Բուլաղը թողնելով աջում՝ սկսեցին բարձրանալ գյուղերից վեր, բարձր մի բլուրի վրա գտնըվող Սանատրուկ արքայի ավերակ բերդը, որի լանջերն ի վար և ավելի հեռուն տարածվող արտերի դեռևս կանաչ վերմակների տակ հիմնահատակ ննջում էր երբեմնի շեն քաղաք Շավարշանը: Անդըրմանուշակագույն ճառագայթների տակ այստեղ և այնտեղ պեծին էին տալիս թրծված աղյուսի և ջնարակված ամանեղենի գունեղ փշուրներ, ներքևում՝ դեղնահուն, տեղ-տեղ ոսկուն տվող Տղմուտով գռահորված Ավարայրի դաշտն էր, հյուսիս-արևելքում՝ Վասպուրականի լեռնապարն իր թագանման գագաթներով, որոնց կանաչակապույտ փիժակները լուծվում էին ծիածանավուն, թափանցիկ մըշուշներում:

Բերդը չկար, սակայն բլրագագաթի կենտրոնում, նժույգների վրա արձանացած, նրանք փոխարինում էին երբեմնի այդ ամրությանը ոչ միայն որպես ժառանգորդներ կորուսյալ փառքերի, այլ ավելին, քանզի մորմոքի հետ միասին նըրանց հոգում բորբոքվում էին գալիք ավարայրների անկասելի կայծերը…

Ահա Շավարշանը, որ երկիցս սրբագործվեց Ավարայրի ճակատամարտով. իսկ ե՞րբ, ե՞րբ էր գալու երրորդ փորձությունը՝ ազատագրական նոր Ավարայրը. որտե՞ղ և ինչպե՞ս…

Սրբազան նահատակների, կիսակործան-ավերակ բերդերի և քաղաքների անվանց հորձանապտույտից խռովահույզ՝ ավերակաց վրա արձանացած փոքրիկ հեծյալը անզոր էր զսպելու իր վաղահաս պատանեկության արդար հուզմունքը. «…Կոխ-բուլաղ… Կարագիադին… Ինչ գործ ունեն քոչվորական ցեղերի այդ օտարահունչ անունները այս սրբազան վայրերում… Նրանք նույնիսկ Տղմուտին Աղ-չայ են կոչել…

Մինչև ե՞րբ պիտի այդ ամոթալի խարանը կրեն բյուր-բյուրավոր նահատակների արյամբ սրբագործված այս հողերը, որ հայոց են, խորին Հայաստան…»:

Կապուտիկն ասես զգալով իր տիրոջ խռովքը, վարդագույն ռունգերը ցնցելով խրխնջում և անհանգիստ դոփում էր մունջ հողը՝ առաջ սուրալու անհամբերությամբ բռնված, իսկ անըկդարը կրծքին սեղմած Շահբազը, հոնքերը կիտած, երևի վերապրում էր Թոռունի կռիվը և ինչ որ բան շշնջում այդ անպատասխան ամայության մեջ:

Կապուտիկը խրխնջաց վերջին անգամ, երբ նրանք, բռնելով վերադարձի ճանապարհը, սկսեցին իջնել բարձրագագաթ բլրի լանջին փռված մաշված տապանաքարերի կողքով, որոնց մեջ աչքի էր խըփում խորտակված մի խաչարձան:

Կեսօր էր արդեն, և Ավարայրի դաշտի վրա իջել էր գերեզմանային լռությունը. վաղորդայնի զեփյուռը չկար: Միջօրեի տոթից գլուխները կախել էին կակաչները ու անմոռուկները, մինչդեռ վաղորդայնին նրանք այնպես երջանիկ մի մղումով ձըգտում էին դեպի արևակույսը, կարծելով, որ ահա վերջապես երևացել են հայոց հետախույզները, և ուր որ է նվիրական դաշտը պիտի փոթորկվի վրիժառու գընդերի աղաղակներով… Բայց գուցե նրանք իրոք տխրել էին համոզվելով, որ

վաղուց-վաղուց արդեն մոռացության են տրվել սուրբ նշխարները նահատակների, միայն այդ երկուսն էին, իրենց պես տխրած, գլխաքարշ անցնում այն սուրբ վայրերով, որտեղ տասնչորս դար առաջ Հավատի և Հայրենյաց սիրով փոթորկված փայլատակում էր Վարդանանց այրուձին, և որոնց թափած անմեռ արյունից ծաղկում էին իրենք, սպասելով հայոց նոր սպարապետին, արդեն քանի դար, արդեն քանի դար...

— Կա-չկա, էտ Թոռունա կովի մեջ էլավ,— լռությունը խզելով՝ ինքն իրեն խոսեց մռայլված Ծահբազը:

— Ինչը՞,— հարցրեց Հակոբը՝ խոհերից սթափվելով:

— Անըկդարիս կոթը քերծվիր ի. խյանչալի պյան ի. ասես եմ՝ Թոռունա կովի մեջ ելավ. վայ ես դյանց դյադյայի-դյադյան...

— Զենք գործածողը՝ զենքը պահել պիտի գիտենա,— ասաց Հակոբը պայծառանալով, քանզի հենց այդ պահին մըտածում էր այդ մասին և ասաց հատուկ հաճույքով, քանզի նա միշտ ինչ-որ առիթ էր փնտրում իրենց հավատարիմ և սիրելի ծառայի հոգու հետ խաղալու:

— Յա,— թոթվեց վերջինս՝ խեթ նայելով նրան:

Եվ հանկարծ ձգվելով Քյապլանի վրա՝ որպես արձագանք անզուսպ խռովքի՝ սկսեց երգել.

— Ավարայրա դաշտն ի հեռուն,
Կաթիլ-կաթիլ կարմիր էրուն,
Կարմիր էրուն, սրբոց էրուն
Ավարայրա ծաղիկներուն:

Ոգևորված Հակոբն իր մանկական ձայնով միացավ նրան.

— Բարև տանիս, բարև տանիս,
Սուրբ նահատակ քաջ Վարդանիս,
Կաթիլ-կաթիլ սրբոց էրուն
Ավարայրա ծաղիկներուն...

Ի քեն հայցեմք մեզ օգնություն,
Ամենասուրբ Երրորդություն,
Ազգիս հայոց՝ ազատություն.
Տուր աշխարհիս խաղաղություն,

— Բարև տանիս, բարև տանիս,
Մամիկոնյան քաջ Վարդանիս,
Կաթիլ-կաթիլ կարմիր էրուն
Ավարայրա ծաղիկներուն...

ԳՈՒՐԳԵՆ
ԳԱԲՐԻԵԼՅԱՆ

## Գրավորին

Գրավոր էր
Գրում Կարոն,
Մեկ էլ «ոտը»
Ընկավ քարով:

— Լսիր,— ասավ
Ընկերուհուն,—
«Վշշալ» բառը
Ո՞նց է գրվում:

— Երկու «շ»-ով,—
Նանան ասավ...
— Իսկ ինչո՞ւ ոչ
Մեկով, ասա...

— Էն մեծ գետը,
Ախր Նանա,
Մի «շ»-ով ո՞նց
Յոլա գնա:

Նկարը՝ Խորեն Հակոբյանի

# ՓԱՌՔԴ ՇԱՏ...



Մենք կարծում էինք, թե իր շանթերով
Հրսկում է Աստված Սասմա սարերին,
Մենք ասում էինք՝ անթիվ նավերով
Կըգան օգնության մեր ծանր օրին...
Ավաղ մեր պայծառ հույսերի համար:
Ահա խորտակված, և ահա կրկին
Նայում ենք անհույս, մենակ, դալկահար՝
Մորթող թշնամու արյունոտ ձեռքին:
Երկրի մեծերը չեն փոխում իրենց
Մեռելի ոսկրին ողջ ազգը հայի,
Մեր տունն են ուզում, մեր տեղն են
ուզում,
Մեր բուն երկիրը՝ մեզնից ամայի:

Ո՞վ է այս տողերի հեղինակը: Հայ մի բանաստե՞ղծ: Սակայն չշտապենք, որովհետև սրանց հեղինակը այն հազվագյուտ շնորհն ունի, որով ժողովրդի մեջ՝ թե՛ կրթված, թե՛ հազիվ գրաճանաչ կամ բոլորովին գիր չիմացող, թե՛ մեծ մարդկանց և թե՛ մանուկների, սիրելի է: Այսպիսի ժողովրդայնություն: Ուրեմն՝ այս տողերի հեղինակը ոչ միայն հայ բանաստեղծ է, այլև բոլոր հայերի, այսինքն՝ հայոց բանաստեղծը: Իր խոսքերն են: Մարդ ոչ միայն ծնունդով պիտի հայ լինի, այլև գործով,— բանաստեղծը ոչ միայն հայ պետք է լինի, այլև հայոց...

Սրանից 120 տարի առաջ Լոռվա Դսեղ գյուղում մի մանուկ է ծնվում: «Նա հետո պիտի դառնա պատանի, և երիտասարդ, և այր իմաստուն, անբախտ Մարոյին լացով ասպանի՝

Մարո՛, անբա՛խտ, վաղամե՛ռ,
Դու մանկության իմ ընկեր,
Որքա՛ն ենք մենք խաղացել,
Իրար սիրել ու ծեծե՛լ..., մեր հառաչանքը հասցնի աստծուն.

— Ի՞նչ ես կորցրել,— ընչի ման գալի,—
Խոսեց ծերունին դառը խնդալով,
Բա մեռած խո չենք, ապրում ենք, էլի,
Ամեն մեռնողի երանի տալով:—Մըրմուռից դաղված նրա բերանով
Սարոյի նանը պիտի ողբ ասի.—
— Ընչի՞ չես խոսում, ընչի՞ չես նայում,
Իմ օր ու արև, կյանք ու ջան՝ որդի,
Դու իմ գերեզմանն ընչի՞ ես խըլում
Թշնամի՛ որդի, դավաճա՛ն որդի...—
Մսրա զորքի հետ Դավիթը խոսի.
— Դարձե՛ք եկած ճանապարհով
Ձեր հայրենի հողը Մսրա.—
Բայց թե մին էլ զենք ու զոռով
Վեր եք կացել դուք մեզ վրա,
Հորում լինել քառսուն գազ խոր
Թե ջաղացի քարի տակին,

Կելնեն ձեր դեմ ինչպես էսօր,
Սասմա Դավիթ, Թուր-Կեծակին:

Իր ազգը խորությամբ է ճանաչում այս բանաստեղծը, այսպես կոնկրետ, մեկ առ մեկ, որովհետև երբ ինքը գրականություն մտավ, բոլորը գիտեին, որ ունենք մի թշվառ հայրենիք, սակայն ոչ ոք չգիտեր, թե ինչն է թշվառ, բոլորը վերացական հայրենիք էին երգում, բայց ոչ ոք չգիտեր, թե ինչ ցավ է տանջում հայ մարդու սիրտը, ինչպես պետք է այդ ցավը բուժել: Նրանից առաջ կային Պատկանյանը, Շահազիզը, Ալիշանը, Հովհաննիսյանը, սակայն նրանք բոլորն էլ ապրելով Հայրենիքից հեռու, այնքան էլ լավ չգիտեին, թե ինչ հոգսերով ու ցավերով է ապրում հայ ժողովուրդը: Իսկ ժողովուրդը ստրկացված էր ու թշվառ, կարիքի ու զրկանքների մեջ: Եվ ահա մի բանաստեղծ, որ անձամբ իր ճակատագրով է կիսել հարազատ ժողովրդի բախտը: Որքան ծանր օրեր է անցկացրել նա նյութական կարիքի մեջ: Իր ընկերոջը՝ Անուշավան Աբովյանին 1892 թվականին գրել է. «Խորին տրտմությամբ հետ եմ նայում հինգ հոգեհան տարիների անցյալիս վրա, որպես մի գերեզմանի, որպես մի դժոխքի, որից դուրս եմ եկել, բայց արդյոք առո՞ղջ եմ մնացել, կենդանի՞ եմ»: Եվ միայն այսպես, առանց իր այս անձնական ցավերը բանաստեղծություն դարձնելու, ծրարված, փակ նամակով, կարծես զգուշանալով, որ հարազատ ժողովրդին առանց այն էլ բավական է իր սեփական հոգսն ու վիշտը: Սակայն որքան դժվարությունների առջև է կանգնած եղել նա իբրև ստեղծագործող, որն իր բազմանդամ ընտանիքը գրչի շնորհով պիտի կերակրեր. «Այս մի զարհուրելի կռիվ է, որ ապարդյուն է անցնում ամեն ջանք, ոչ ընտանիքին ես մի ճար անում, ոչ գրականության մեջ ես մի գործ տեսնում, երկուսն էլ խանգարվում են»: Նույնիսկ քահանա դառնալ է որոշել, որպեսզի ինչ-որ կերպ կարողանա հաղթահարել իր ընտանիքի զրկանքները: Սակայն երբ այդ մասին իմանում են նրա բարեկամները, սաստիկ ընդդիմանում են, մանավանդ իշխանուհի Թումանյանը, որը շատ անգամ է նեցուկ դարձել բանաստեղծին: Պատկերացնո՞ւմ եք, թե ում կկորցնեինք, եթե նա ընկրկեր նյութական զրկանքների առջև: Այո, նյութական զրկանքների մեջ էր, ինչպես հասարակ գյուղացիները: Եվ ոչ միայն իր ազգակիցների նյութական զրկանքները էր կիսում: Նա նաև իր ժողովրդի քաղաքական բախտն էր կիսում: Ստրկացված, ազատությունից զրկված իր ժողովրդի պես ու իր ժողովրդի համար նա ինքն էլ հաճախ անազատ էր, մշտական հետապնդումների մեջ, ձերբակալված, բանտերում, զրպարտված: Եվ միշտ հայրենիքի ազատությամբ մտահոգ: Կինը՝ Օլգա Թումանյանը հիշում է, թե ինչպես մի օր տուն վերադառնալով, ամուսինը ասում է՝ «քեզ եմ պարտական, կյանքս ազատեցիր»: Պարզվում է, որ իր ծանոթներից մեկի՝ Ալեքսանդր Գոլոշյանի հետ որոշել են գնալ Տաճկահայաստան, հայրենիքն ազատելու: Ծախել է ամառային վերարկուն, ատրճանակ գնել, բայց նրշանվելու պատճառով գնալը հետաձգվել է, իսկ գնացողները ճանապարհին ըսպանվել են: Ըստ երևույթին, չգնալու պատճառը նաև հիվանդությունն է եղել, քանի որ Գոլոշյանը Արևմտահայաստան մեկնել է 1888-ի հուլիսին, երբ Թումանյանը հիվանդ է եղել: Բայց և զգում էր, որ «վշտոտ ազգը, տառապած սազգը շարժվում է իմ մեջ, ուզում է խոսել... իմ մեջ մի զարհուրելի լույս է ծագել— մեծ գործ շինելու ցանկությունը: Բայց մեր աշխատանքում մենք ունենք գրողի տառապանքը, առանց ունենալու գրողի կյանքը»:

Այսքանով հանդերձ՝ միշտ պայծառ, բարի ու ներող՝ իր ժողովրդի պես, իր ժողովրդի հերոս Սասունցի Դավթի պես: Նրա կարծիքով՝ ամեն ժողովուրդ իր էպոսի, հերոսավեպի հերոսին է նման. գերմանացին հիմա (առաջին աշխարհամարտի ժամանակ, և ոչ միայն առաջինի, որքա՜ն ճշմարիտ էր նա) ձգտում է համաշխարհային տիրապետության, ինչպես նրա էպոսի հերոսը՝ Զիկֆրիդը, իսկ Իլյա Մուրոմեցը կարծում է, թե ինքն ուժ չունի, բայց հետո վերագտնում է իրեն, ինչպես հիմա Ռուսաստանը: Հայ էպոսում Դավիթը և բոլոր հայերի կերպարները կռվի են ելնում այն դեպքում միայն, երբ թշնամին առաջինն է պատերազմ սկսում: Նրանք ներող ու բաշխող են, միամիտ ու հավատավոր, իրենց նմանի մասին մտածող: Ու ինքն էլ չէր կարող այսպիսին չլինել, հակառակ դեպքում «Սասունցի Դավթի» մշակումը նրան չէր հաջողվի:

Ու նաև մեծագույն երազող էր: Կյան-

քում ապրում էր իր հերոսների կողքին ու նրանց ցավերով, սակայն երբ բանաստեղծում էր, բարձրանում էր իր «լեռան ծերը», ուզում էր պոկվել աշխարհքից, հեռանալ մի եդեմ, ուր ապրում է իր երազած մարդը, որ հրաժարվել է այն ամենից, ինչը ճնշում է հոգին՝ փառք ու գանձ, քեն ու նախանձ: Բայց և ճանաչում, լավ էր ճանաչում երկրի վրա շրջող մարդուն, չէ՞ որ վկան էր իր ժողովըրդի մահամերձության 1894—96, 1908, 1915, 1918—21 թվականներին:

Հանգե՜ք, իմ որբե՜ր… իզո՜ւր են
հուզմունք, իզո՜ւր և անշահ.
Մարդակեր գազան՝ մարդը դեռ երկար
էապես կը մնա…

Ի՞նչ էր ուզածը՝ խաղաղություն: Սակայն ինքն ավելի լավ ու հասկանալի է ասում.

Հե՜յ ագահ մարդ, հե՜յ անգոհ մարդ,
միտքըդ երկար, կյանքըդ կարճ,
Քանի՜ քանիսն անցան քեզ պես,
քեզնից առաջ, քո առաջ,
Ի՞նչ են տարել նըրանք կյանքից, թե
ի՞նչ տանես դու քեզ հետ,
Խաղաղ անցիր, ուրախ անցիր երկու
օրվա էս ճամփեդ:

Իր երկու օրվա էս ճամփեն պայքարով ու կռվով անցավ, երբ դեռ երիտասարդ՝ ատրճանակ էր գնել Արևմտահայաստան անցնելու և ազգը փրկելու, երբ սպիտակ դրոշակն առած՝ գնդակների տարափի տակ զինադադարի ու հաշտության կոչեր էր անում ազգամիջյան ջարդերով բորբոքված Կովկասում, երբ շրջում էր սովյալ, գաղթական իր հայրենակիցների մեջ՝ մի կտոր հաց այս ու այն կողմից հայթայթելով նրանց համար: Այս ամենի հետ՝ չմոռանալով գրողի ու ազգի մշակի իր պարտքի մասին՝ սկզբից մինչև վերջ, երբ աշխարհով ցրված հայ արվեստագետներին տուն էր կանչում, երբ 1922 թվականին բողոքում էր Աբեղյանի նոր ուղղագրության վերաբերյալ. «Ես որպես հայ գրող և գրողների միության նախագահ գալիս եմ հայտնելու իմ զարմանքը և բողոքելու էն վարմունքի դեմ, որ ունեցել է Հայաստանի լուսժողկոմատը էս կարևոր խնդրում»: Քաջ գիտենալով հարցի կարևորությունը, բողոքում էր, որ այն առանց լայն քննարկման դրվելու է ընդունվել: Իսկ նոր ուղղագրությունը մի միջանկյալ քայլ էր լատինատառ գրին անցնելու ճանապարհին: Ինչ խոսք, այս մոլորության հետ ինքը չէր կարող հաշտվել, չնայած մենք մինչև օրս էլ զարմանալի անտարբեր ու հանդուրժող ենք: Համայն ազգային մեկ ուղղագրություն է պետք, որպեսզի ինչ-որ տեղ նա էլ ավելի միասնական լինի, և ոչ թե արհեստական բաժանմամբ՝ երկուսը, որպեսզի սեպ խրվի ազգի մտածողության, հոգևոր միասնության մեջտեղում: Առանց այն էլ սեպը վաղուց խրված էր: Իր երկու օրվա էս ճամփեն պայքարով ու հանճարեղ պարզատեսությամբ անցավ. նա գրում է. «Վերցրեք Թուրքիայի քարտեզն ու մտիկ արեք: Դա մի նոր պետություն է, որ դըրսից եկել է ու կոպիտ ուժով նստել հին կուլտուրական ազգերի ու նրանց հայրենիքների վրա… Էս տեսակետից էլ հայկական հարցը Տաճկահայաստանը հունող ամենածանր ցավերից մինն է, և հետըզհետե թերևս դառնա ավելի ու ավելի ծանր, քանի թուրքն ստիպված լինի սեղմվել դեպի էս կողմերը: Եվ ահա էս հարցից ազատվելու հնարը էապես է վըճռել թուրքի պետական հանճարը—հայերին կոտորել կամ հալածել, քշել, գաղթեցնել: Այո, վայրագ ու անօրեն է էս ճանապարհը, այլև խելագար, սակայն հաստատ»: Այս ամենի դեմ կռվելով ու պայքարելով, այս ամենը գիտակցելով ու հասկանալով՝ էլ ինչպես չերազեր: Նա պիտի որ իր երկու օրվա էս ճամփեն նաև երազելով անցներ: Երազում էր մարդուն կատարյալ տեսնել, ազգերին իրար նըկատմամբ արդար, իրար հետ հաշտ, որովհետև ինքն իրեն արարչի առաջ պատասխանատու էր զգում այդ ամենի համար, մարդու համար:

Ինչքա՜ն ծաղիկ պիտի բուսներ, որ
չըբուսավ էս հողին…
Ի՞նչ պատասխան պիտի ես տամ հող ու
ծաղիկ տըվողին…

Ու միշտ է երազել, որովհետև դա էր իր կոչումը: Իր ծանոթներից մեկին՝ Փիլիփոս Վարդազարյանին գրել է. «Դու ուզում ես գտնել, թե ես ինչպես եմ հասկանում իմ կոչումը… Այս հարցի պատասխանն է լինելու շատ ընդարձակ չափով «Հազարան բլբուլը»: Նրա ժամանակակիցները վկայում են, որ այդ պոեմը պետք է լիներ արևելյան մի ինքնատիպ «ֆաուստ»: Այդ հսկայածավալ աշխատանքին նա ձեռք է մեկնել դեռևս 1899 թվականից, երբ որոշել է համանուն հեքիաթի հիմքի վրա «հորինել մի արևել-

յաՆ պոեմ»: Հավաքել է «Հազարան բըլբուլ» ժողովրդական հեքիաթի մոտ վաթսուն տարբերակ: Աշխատել է երկար տարիներ, բայց այդպես էլ չի հասցրել ավարտել իր «փաուստը», որի մեջ երևում է մարդու իր իդեալը, որը հոգեկան ու ֆիզիկական ամրության տեր, ինքն իրեն միշտ տիրապետող, նաև՝ խելացի, անցողիկ կրքերում կույլ չգնացող մարդն է: Մի յուրահատկություն. դրա համար, ինչպես երևում է այդ անավարտ պոեմից, մարդկային էության հարցն է գլխավորն ու ամենաընդգրկունը. եթե մարդն իրոք մարդ եղավ, ուրեմն՝ մյուս բոլոր հարցերը համեմատաբար ավելի հեշտ պետք է լուծվեն, լինեն դրանք քաղաքական, թե սոցիալական բնույթի:

Դժվար է հավատալ, որ մարդու ճակատագրով այսքան մտահոգ գրողին շատ են մեղադրել իր գրականության մեջ մարդուն անտեսելու համար, իբր նրա ստեղծագործություններում չի երևացել մարդը: Եվ ոչ միայն գրականության մեջ, նրան չեմ հասկացել կյանքում ևս: Նույնիսկ զրպարտել են ազգեր թշնամացնելու, մարդկանց իրար դեմ հանելու մեջ: Բայց ինքը միշտ հույսով է եղել. «Գործը կըբացվի, և ի զարմանս բոլոր դատավորների կպարզվի ողբերգությունը և այն, թե ինչքան ստորությունների են ընդունակ մեր հայրենակիցներն ու հարևանները»: Ինչքան ցավ, նենգ ու դավ է տեսել, տարել ու ներել ու միշտ իր բարձրության վրա մնացել, հյուրասեր, մարդամոտ, զըրույցի համար հոգի տվող, ժպիտը դեմքին, վեճերի, ժողովների ու քեֆերի մեջ խճճված, խնջույքների, հրավերների հոգին, շողշողուն ջահը, ինչպես Իսահակյանն է հիշում, միշտ ժամանակ չունեցող, ժամացույց չգործածող, քանի որ չէր սիրում չափված ժամանակով շարժվել, քանի որ չէր տեղավորվում ժամկետների մեջ, ինչպես որ նրա ստեղծագործությունը չի տեղավորվում ժամանակի մեջ:

Նրա մասին միշտ ու էնքան լավ բան կա խոսելու: Ինչ լավ բան ասես, նրան հարմար է, բայց ուզում եմ խոսքս այսքանով ավարտել, քանի որ երկար խոսողներին սովորաբար չեն սիրում, իսկ ես նրա մասին գուցե շատ երկար խոսեմ, քանի որ բոլոր հայերի պես ես էլ եմ նրանով հարբած: Փառքդ շատ, Թումանյան:

**ԹԱԴԵՎՈՍ ՏՈՆՈՅԱՆ**

**ՀԵՂԻՆԵ ՄՈՒՐԱԴՅԱՆ**

## Հայ մոր աղոթքը

Ես հայ մի կին, ես հայ մի մայր,
Ով զորավոր աստվածամայր,
Քեզ եմ դիմում աղերսագին
Ամենօրյա աղոթքով.
Դու իմ ազգի որդիների
Ու դուստրերի սրտերում
Խոր սերմանիր միասնության
Ոգին, հզոր միության:
Սերը ազգի, հայրենիքի,
Զորեղ լինի թող այնքան,
Որ ամենայն գայթակղության
Դիմադրի անսասան:

Նկարը՝ ՀՈՎՆԱՆ ԿԱՐԱՊԵՏՅԱՆԻ





# ՍՏԵՂԾԱԳՈՐԾՈՒՄ ԵՆ ԴՊՐՈՑԱԿԱՆՆԵՐԸ

## Սարսափելի է

Սարսափելի է,
Երբ օրհնությունը լույսի զեղման մեջ է,
Երբ որ ցերեկվա խորհրդավոր փայլը
Դառնում է հանգույց,
Թռչունները ճախրում են անսկիզբ
ու բնազդով
Եվ իրենց փործությունը տնտղում են
Կյանքի մեջ...
Հիմա կայծակը կկնքի փորձության
Նոր տարին, որ
Հոսող թախծի ներշնչանքը
Ծախրի շուրթերով աղջկա...
Զարմանալու ոչինչ չկա:

## Ստվերները

Ստվերները գիշերվա մեջ
փոշիացնելով խիտ ժամանակը
և մութը մատուցող եզերքի նման կերտելով
մի փաղաքշանք ու
փշոտ լռություն՝
իմ երակների մեջ բացում են
համրության կարմիր ճանապարհը,
որ մոլեգնորեն շշնջում է.
մենության ալիք..
Գիշե՛ր,
կրծքիս վրա ամպն է ննջում,
ուր նահատակվել են
ստվերները...

## Սեր

Մշուշն ի վար
թռա՛վ, հանգա՛վ, հանգա՛վ
քո ստվերը,
և աչքերիդ արտացոլանքը
խոսեց.
— Քո կարոտը մնացել է իմ կոկորդում...

## Վիլյամ Սարոյան

Հաղթելու ծանր ձգտում,
օտարացման մեջ կյանքի մի այլ շեմ,
ուր երբեմն հառնում է հոգին
ներքին արթնացումից
և փնտրում
շարժում:
Սիրտ...
Որ հիմա ասես սև լույս՝
սկսում է հավերժանալ,
հետո ասես ստվեր՝
անէանում...

## Այսօր

Այսօր քարերի վրա
թողեցի ճակատագրի մետաքսաթելը,
և քարը փայլեց.
այդպես փայլում է
մահը
թռիչքների պահին:
Այսօր մամուռների վրա
թողեցի
ցավերիս փակվող աչքը,
և մամուռները դեղնեցին.
այդպես դեղնել է փողոցը՝
մեր մանկության
խռովքից...



## Կյանք

Մարդը խաչեց վերջին կորուստը
և մի գայթակղություն
կապեց
րոպեի հերթափոխից…
Տեսանելի է գոյությունը,
այդպես երևում է ամպից մաքրված
ժամանակը,

ուր ձեռքը նշաններ է որոնում,
ուր ցանկություն կա անէացնել գրոհը
արարումի:
Լույս…
Արահետ է նորից բացել հագեցած օրը,
և թվում է, թե տարածությունը պայքար է.
կասկածում եմ…

Գիշերային հուսք…
Ավարտված հորիզոնից մեկ ստվեր
յաթաղանի դիպուկությամբ
արտացոլվեց.
Նպատակը ձգեց բարության ծիլը—
Երջանկություն է…



Նկարները՝ ՄԻՆԱ ԱՆԱՆՅԱՆԻ
Երևան, 14 տարեկան

## Արցախ

Ինչպես անձրևն է երգում ժեռ սարերի
գլխին,
Սարերից վեր նախշելով վերջալույսը երկար,
Վազ են տալիս կույտերը շտապելով կրկին,
Դեպի ծայրերն համր, դեպի խորքերն օտար:

Ինչպես թռչող հավքից խրտնած նժույգ՝
Արշալույսից փախած՝ եզերքներն են դեպի
Տանում իրենց հեռու կարոտները գրկած,
Կարծես բերած լինեն երկնային խոր ձորից:

Թողած բաղեղները կանաչների եզրին,
Սթափվելով կարծես մշուշներից անկամ,
Իրիկնային մի լույս փրփրում է դեզին:
Ի՞նչ է ուզում:— Ոչինչ: Անհանգիստ է
սակայն:

ՄՀԵՐ ԱՐՇԱԿՅԱՆ
Մեղրու գիշերօթիկ դպրոց

**ՍԵՐԳԵՅ ԶԱԼԻԳԻՆ**




Ռուսերենից թարգմանեց
**ՆԵՐՍԵՍ ԱԹԱԲԵԿՅԱՆԸ**

Նկարը՝ ԱՇՈՏ ԲԱՅԱՆԴՈՒՐԻ

Արդեն ճաշից հետո, պատրաստվելով աշխատանքի գնալ, մայրիկն ասաց.

— Կատյուխա, դու, խնդրում եմ, ում առաջ պատահի դուռը բաց չանես, իսկ երբ գա Ձմեռ պապը, մի լավ նայիր դիտանցքից ու նոր բաց արա: Նա չար ու սարսափելի չէ, նա լավն է ու բարի, քեզ նվեր կբերի:

«Ծիծաղելի է Ձմեռ պապից վախենալը,— մտածեց Կատյուշան:— Մի՞թե Ձմեռ պապը կարող է չար լինել»: Մորը հարցրեց.

—Նա ե՞րբ կգա: Ո՞ր ժամին:

— Երբ իրեն հարմար լինի, երբ ստացվի, այն ժամանակ էլ կգա: Նա մեկն է, իսկ դուք՝ փոքրերդ, տես քանիսն եք մեր միկրոշրջանում: Մի օրում բոլորին չես սպասարկի: Այսօր շատ Ձմեռ պապեր են շրջելու տները: Մի ամբողջ բրիգադ:

Մայրիկը դրեց դարչնագույն գլխարկը, որ սակավ էր օգտագործում, պտույտ եկավ հայելու առաջ, համբուրեց Կատյուշայի ճակատը, հագավ ճտքավոր կոշիկները, վերարկուն ու գնաց: Բաժանվելիս ասաց նաև.

— Լավ եղիր, խելոքս: Ու չմոռանաս. Ձմեռ պապի անունը Նիկոլայ Ֆյոդորովիչ Պորտուգալով է: Քեռի Կոլյա Պորտուգալով: Խնդիրներդ էլ կլուծես և ընդհանրապես՝ բոլոր դասերդ էլ կսովորես:

«Հը՞,— մտածեց Կատյուշան:— Բռնեմ ու լուծեմ: Բոլորը լուծեմ: Ու բառերն էլ գրեմ՝ մինչև վերջինը: Ու ամբողջ նկարելիքն էլ նկարեմ: Իսկ երբ գա Ձմեռ պապը, բոլոր նկարներս ցույց կտամ նրան: Ու որևէ նկար էլ կնվիրեմ: Այն, որն իրեն ամենից շատ դուր կգա»:

«Ճիշտ է,— մտածեց Կատյուշան քիչ անց, երբ արդեն նստել էր սեղանի մոտ ու զբաղվում էր հանում-գումարումով,— ճիշտ է, ոչ ոք իրավունք չունի արձակուրդների ժամանակ երեխաներին դաս հանձնարարելու: Չունի և չունի. սա արդեն հաստատ է»:

Եվ պետք է ասել, որ Կատյուշան գլուխ հանում էր իր իրավունքներից:

Հանում-գումարումը քիչ-միչ ստացվում էր՝ ո՛չ լավ, ո՛չ վատ: Երբ վատ էր լուծվում, Կատյուշան այդ մասին արտահայտվում էր այսպես. «Այ քեզ լկտիություն»,— ասում էր կամաց, իր համար, բայց երբեմն նաև բարձրաձայն:

Ուր որ է կսկսվի Նոր տարին. իսկ ի՞նչ բան է դա: Ամենից ստույգ՝ դա ծննդյան օր է բոլորի համար: Յուրաքանչյուրն ունի իր սեփական ծննդյան օրը, իսկ երբ բոլորը իրենց ծննդյան օրերը միացնեն մեկ օրվա մեջ, այդ օրն էլ հենց կդառնա Նոր տարի:

Ընդ որում, Նոր տարին, երևի, նաև մեծերի համար է լավ, որովհետև նոր տարում նրանք որոշում են ամեն բան լավ անել, առանց վատ գնահատականների:

Ճիշտ է, մեծերի համար Ձմեռ պապ չի լինում, բայց լինում է, հաստատ, ինչ-որ այլ ձմեռպապային բան:

Լինո՛ւմ է... լինո՛ւմ է... Ինչ-որ հաճելի բանի մեծերն էլ են սպասում երեխաներից ոչ պակաս:

Կատյուշան մեծերին չի նախանձում, չէ, չի նախանձում ու չի շտապում մեծանալ: Ինչպես մեծանում է, այդպես էլ թող մեծանա, ավելի արագ պետք չէ, իսկ ավելի դանդաղ՝ ինքը համաձայն է:

Բոլոր փոքրիկները համարյա թե բարեկամներդ են, կարելի է հարցնել. «Անունդ ի՞նչ է», ու նա կպատասխանի, կտա անունը, և վերջ՝ բարեկամների հանդիպումը կայացավ: Իսկ փիսիկին կամ շնիկին նույնիսկ հարցնել էլ պետք չէ՝ ինքդ նրան այն անունը կտաս, որը քեզ դուր

է գալիս, որը, քո կարծիքով, նրան համապատասխանում է, ու վերջ՝ պատրաստի բարեկամներ:

Ու եթե լավ մտածես, կյանքն առանց դրա չափազանց տաղտկալի ու սխալ կլիներ:

Ընդհանրապես, Կատյուշան համարյա ոչինչ չէր կարող ասել մանկության մասին, չնայած շատ լավ գիտեր, թե դա ինչ է: Գիտեր մանկությունը, սիրում էր այն, զգում իր յուրաքանչյուր բջիջով: Ու վիրավորանք չէր զգում ո՛չ իր, ո՛չ էլ այն բանի համար, որ բառեր չէր գտնում՝ ինչ-որ կերպ և ինչ-որ մեկին պատմելու իր զգացումները:

Այ, երբ մեծանա, այն ժամանակ էլ բառերը կսովորի, մեծերը կարողանում են, չէ՛, ամեն բանի մասին խոսել:

Բացի դրանից՝ Կատյուշան նկատել էր, որ այն, ինչ փոքրերը պահում են մըտքում, կատարվում է ավելի հաճախ, քան մեծերի մտապահածները:

Այսօր ի՞նչ է մտքում պահել Կատյուշան:

Երբ մութն ընկնի, հնչի դռան զանգը, ինքը բաց կանի դուռն, ու նախասենյակ կմտնի... Ձմեռ պապը՝ կարմիր քթով, մեծ մորուքով, ուսին՝ պարկ: Սպիտակ գդակով, հագին կարմիր քուրք և ուսին՝ պարկ: «Իսկ եթե նա որևէ բան մոռանա՞ մորուքը, քիթը կամ պարկը,— վախեցավ Կատյուշան:— Բայց չէ: Չի կարող պատահել»:

Անհրաժեշտ է սպասել: Բայց մութն ընկնելուն հետ այլևս սպասելու ուժ չմընաց:

Կատյուշան սանդղահարթակ էլ դուրս թռավ, չէ՛, ոչինչ չէր օգնում, Ձմեռ պապը չէր գալիս:

Եվ այնուամենայնիվ նա եկավ, կատարվե՜ց: Ինչպես որ պիտի զանգ տար, այնպես էլ զանգեց, ինչպես լայն պիտի բանար դուռը, այնպես էլ բաց արեց:

Կարմիր քուրք էր հագին, դրել էր ճերմակ գդակ, մորուքով էր և ուսին՝ պարկ. ամենանիսկական Ձմեռ պապ:

Սովորաբար Կատյուշան, դռան զանգը լսած-չլսած, բարձր բղավում էր՝ «Բարև ձեզ», և վազում ու բաց էր անում դուռը:

Մայրիկը, հայրիկը և Լիդան ասում էին, որ նախքան բանալը անպայման պետք է հարցնել. «ո՞վ է», և նոր միայն, եթե ծանոթ մարդ է զանգողը, բանալ, իսկ եթե անծանոթ է՝ բաց չանել:

Մայրիկը նաև այսպիսի բան էր մտածել. նա դռանը ներսից երկու քորոցներով մի թերթիկ էր ամրացրել, որի վրա բոլոր տպագրատառերով գրված էր.

ՈՎ Է

Բայցևայնպես, դրանից հետո էլ Կատյուշան չէր կարողանում անել այն, ինչ, ըստ մայրիկի նախատեսածի, անպայման պիտի ստացվեր: Նա վազում էր զանգի ձայնին, քանի որ իրեն սեփական ոտքերն էին տանում այնտեղ, բացում էր դուռը, ասում էր «բարև...», ու երբ հյուրը մտնում էր նախասենյակ, նոր միայն հարցնում էր՝ «ո՞վ է»: Նույնիսկ ծանոթ մարդուն: Մի քանի անգամ նա Լիդա քույրիկին էլ էր հարցրել՝ «ո՞վ է», ու Լիդան ծիծաղից խեղդվելով, ասել էր. «Այ, կմեծանաս մի քիչ էլ, ու ես քեզ համար, Կատյուշա, թութակ կառնեմ, որպեսզի նա քեզ ռուսերեն սովորեցնի»: Իսկ Կատյուշան չէր խռովել, նա ոչնչով դեմ չէր թութակին, ավելի շուտ՝ հակառակը: Լիդան այդպես էլ կանչում էր Կատյուշային՝ «Ո՞վ է»:

Ձմեռ պապը բարձր էր զանգահարում, ողջ ուժով, ուրիշ ոչ ոք այդպես զանգել չէր կարող: Կատյուշան բացեց դուռը, իսկ նա դեռ երկար զանգում էր նայելով աղջկան, առաջ պարզած իր չափից դուրս մեծ, չափից դուրս կարմիր քիթը:

— Ո՞վ է,— հարցրեց Կատյուշան ու զնգուն ծիծաղեց ինքն իր վրա:

Ձմեռ պապը պարկը դրեց նախասենյակում ու հարցրեց.

— Իսկ Կապիտոլինան ո՞ւր է:

Կատյուշան շփոթվեց: Նա բոլորովին այլ հարցի էր սպասում, ասենք՝ իր անունն ի՞նչ է կամ էլ՝ վաղո՞ւց է սպասում Ձմեռ պապիկին:

— Ո՞վ,— չհասկացավ Կատյուշան: Նա գլխի չընկավ, որ Ձմեռ պապը մայրիկին է հարցնում:

— Ինչպես թե՝ ո՞վ: Կապիտոլինա Յակովլևնան,— նույնքան զարմացավ Ձմեռ պապը:— Դու, ինչ է, նրան չե՞ս ճանաչում:

— Նա աշխատանքի է: Նա այսօր ուշ գնաց, նշանակում է՝ ուշ էլ կգա: Իսկ նա ձեր ինչի՞ն է պետք: Չէ՞ որ նա մեծ է:

— Այ քեզ բան,— զարմացավ Ձմեռ պապը:— Այ քեզ բան: Նա քո ի՞նչն է: Մայրի՞կդ: Իսկ իմ պետն է, ահա թե ինչ: Ղեկավարը: Այ, դու ինձ ասա՝ քանի՞ երեխա ունի մայրիկդ: Դու մեկ, իսկ երկրո՞րդը:

— Երկրորդը՝ Լիդան:

— Իսկ երրո՞րդը:
— Երրորդը՝ ոչ ոք:
— Արդյունքում՝ երկուսը: Մեկ, երկու ու՝ վերջ: Իսկ այսօրվա դրությամբ մայրիկդ տասնյոթ Զմեռ պապ ունի: Ահա և համեմատիր երկուսն ու տասնյոթը: Հաշվել գիտե՞ս:

Պարկը թողնելով նախամուտքում, Զմեռ պապը մտավ խոհանոց: Այնտեղ նստեց սեղանի մոտ, ճերմակ գդակը դրեց սեղանին ու մատով տկտկացրեց հախճապակե թեյամանին:

— Թուրմո՞վ է,— ապա նայեց թեյամանի մեջ:— Ստիպված կլինենք սպասել,— ընկեր մայրիկ Բոդրովային: Երբ գործ կա, սպասելն անխուսափելի է՝ օրենք է: Եռացած ջո՞ւր էլ կա: Պարապ սպասելիս, աղջիկս, ժամանակը դժվար է անցնում: Ջուրը տաքացնել գիտե՞ս:

Կատյուշան գիտեր:

Զմեռ պապն ուշադիր նայում էր, թե նա ինչպես է լցնում մեծ մետաղյա թեյամանը, ինչպես է վառում սալօջախը, թեյամանը դնում այրոցին, ինչպես է չորաբլիթները տեղավորում սկահակի մեջ:

Նստեցին, լռեցին:

Կատյուշայի լացը գալիս էր, բայց մըտածեց. «Հյուրերի ներկայությա՞մբ: Շատ, շատ անքաղաքավարի կլինի»... Ու սկըսեց մտածել, թե ինչու է լացը գալիս: «Այն պատճառով չէ՞, որ Զմեռ պապն իր մեծ պարկը թողել է նախասենյակում: Թողել է ու միջից ոչինչ չի հանում: Իսկ եթե այդպես է, եթե դրանից է իր լացը գալիս, ապա լրիվ ամոթ է, և աստված չանի, թե որևէ մեկը կռահի, թեկուզև՝ Զմեռ պապը: Պա՞հ, պա՞հ, Զմեռ պապի նվերը: Կոնֆետներով ու բլիթներով ինչ-որ փաթեթ, ինչ-որ խավաթղթե օրացույց, ինչ-որ թղթե խաղալիք՝ ու վերջ»:

— Քեռի Կոլյա,— հարցրեց Կատյուշան,— Նիկոլայ Ֆյոդորովիչ,— հիշեց, որ մայրիկը հենց այսպես էր կոչում նրան՝ այս մարդուն,— դուք բոլորովին էլ իսկական Զմեռ պապ չեք, չէ:

— Մեղա աստծու,— չոքերին զարկեց քեռի Կոլյան:— Մեղա աստծու, ի՞նչ ես հարցնում, աղջիկս: Մի՞թե նրանք լինում են, իսկականնե՞րը: Չեն լինում: Ախր, մեծ ես արդեն ու երեխայական հարցեր ես տալիս, իսկական մանկիկ: Հերդ ու մերդ քեզ մինչև հիմա օրորո՞ւմ են քընեցնում. «Քնիր, մանկիկ իմ սիրուն, պայծառ լուսինն է նայում»... Դե, իսկ Կապիտոլինա Պավլովնա՞ն: Նա՝ գիտակից կին՝ ո՞ւր է նայում: Նրա մոտ ինչպե՞ս է դրված ընտանեկան դաստիարակությունը:

Եվ Կատյուշան արդեն լաց չլինել չէր կարող ու լաց կլիներ, եթե այդ պահին մայրիկը չգար:

Մայրիկն անմիջապես ուշադրություն դարձրեց Զմեռ պապի՝ նախասենյակում դրած պարկին:

—Սա ի՞նչ բան է: Ինչո՞ւ է այստեղ: Որտեղի՞ց:— Ու ներս նայեց խոհանոց:— Հա, դու այստե՞ղ ես, Պորտուգալով: Իսկ ինչո՞ւ ես ամբողջովին դիմակազերծ եղել: Ի՞նչ կա:

Պորտուգալովը վեր թռավ աթոռից և սկսեց հապշտապ կպցնել ձմեռպապյան քիթը, գլխին քաշել գդակը:

— Առանձնապես ոչինչ, Կապիտոլինա Յակովլևնա, առանձնապես ոչինչ: Հասկանալի է՝ առանց սպասելու գործ չես անի, մենք էլ, ահա, զրուցում ենք ձեր դստրիկի հետ: Խելացի աղջիկ է, ասեմ ձեզ, հասկացող: Եվ արդեն մեծ է: Եվ՝ զարգացած:

Մայրիկը, Պորտուգալովին ականջ չդընելով, հանեց վերարկուն և արդեն ուզում էր մորթե գլխարկը հանել, բայց այլ բան վճռեց: Հենվելով դռան կողին, սկսեց թափ տալ նախ մեկ, հետո՝ մյուս ոտքը՝ կոշիկները հանել: Մնալով գուլպաներով, նա էլի գնաց հայելու կողմը ու զննեց իրեն՝ գլխարկը գլխին, գլխարկը ձեռքին բռնած, ապա՝ բոլորովին առանց գլխարկի: Զգույշ ուղղեց իր շագանակագույն, արդեն ամանօրյա սանրվածքը, հագավ հողաթափերն ու մտավ խոհանոց:

— Պարկդ լիքն է, նվերները չես բաժանել, գրաֆիկը չես կատարել և անգործ նստել ես ուրիշի բնակարանում:

— Կապիտոլինա Յակովլևնա,— հանդիսավոր և արդեն համարյա կանացի ձայնով խոսեց Պորտուգալովը,— դուք նախ լսեք մարդուն, հետո նոր խոսեք:

— Իսկ ես ի՞նչ եմ անում: Քեզ չե՞մ լըսում, ի՞նչ է: Ասա, խնդրեմ, մի քաշվիր, մի հեծկլտա. դուք բոլորդ լացելու մեջ վարպետ եք:

— Ախր ես լուրջ եմ ասում, Կապիտոլինա Յակովլևնա: Ես՝ լուրջ, իսկ դուք, առանց մարդուն լսելու, արդեն...

Մայրիկը զայրացած էր, բայց զսպում էր իրեն: Զմեռ պապ Պորտուգալովը վախեցած էր, շփոթված, քիթը թռել էր աջ այտին,իսկ գդակը՝ թեքվել ձախ ականջին, երկու ձեռքով, չգիտես ինչու, տընտ-









ղում էր ինքն իրեն՝ իսկակա՞ն է, թե՞ իսկական չէ: Համոզվելով, որ ինքն ինքն է, Պորտուգալովը կրկին խոսեց.

— Կապիտոլինա Յակովլևնա, ինձ մոտ խնամիս էր եկել: Ամսի մեկին, երկուսին ու, կարծեմ, երեքին էլ:

— Հետո՞:

— Հետո՝ խնամիս էր եկել: Աղջկաս հետ, փեսայիս հետ, ու գլխավորը՝ ինքը:

— Հետո՞:

— Էլ ի՞նչ հետո: Խնամիս պաշտոնաթող մայոր է, ներքին զորքերի: Հիմա՝ թոշակառու: Նվերներ էր բերել, իսկ ես ուր եմ: Ես տանը չեմ:

— Հետո՞: Խնամին ո՞ւմ մոտ էր եկել, քե՞զ մոտ, թե՞ ինձ մոտ: Մայորը՝ քեզ մոտ, թե՞ ինձ մոտ:

— Կապիտալինա Յակովլևնա, ես չէ՞ որ ձեզ մարդավարի բացատրում եմ, նա ինձ մոտ էր եկել:

— Իսկ ես ի՞նչ գործ ունեմ: Եթե նա ոչ թե ինձ մոտ, այլ քեզ մոտ էր եկել, ես ի՞նչ գործ ունեմ:

— Տեր աստված, տեր աստված: Խնամիս տանը ինձ է սպասում, թեյ խմում, իսկ ե՞ս: Ես այդ ժամանակ պիտի քարշ գամ հարկից հա՞րկ: Տեսեք ինչ աշտարակներ են՝ տասնվեց հարկ, ու բոլոր բնակարանները պիտի շրջեմ: Ու ես էս տեսակ երեք աշտարակ ունեմ: Մի՞թե դա հնարավոր է: Այն էլ այսպիսի պայմաններում...

Զմեռ պապ Պորտուգալովը վեր թռավ ու ցնծալից թափահարեց ձեռքերը:

— Ահա, ահա, Կապիտոլինա Յակովլևնա, մեր թանկագին: Դե, եթե ես փոխարինող չունենայի, միթե կհամարձակվեի թեկուզ ակնարկել: Երբեք: Բայց ես ձեզ կասեմ, Կապիտոլինա Յակովլևնա, ես փոքր տղայիս կուղարկեմ, մանկական ամբողջ կոնտինգենտը երեք աշտարակներում էլ կսպասարկի: Վայրկյանական:

Մայրիկը նստեց խոհանոցի աթոռակին, մտածեց ու ասաց.

— Ի՞նչ անեմ ես ձեզ հետ: Ի՞նչ: Այսօր արդեն երրորդ հրաժարականն է: Երկուսը՝ աշխատանքի տեղում, մտածեցի՝ վերջ, գալիս եմ տուն՝ նույն պատկերն է:

—Կապիտոլինա Յակովլևնա, դե, եթե ես ինչ-որ հարբեցող լինեի, անգիտակից, եթե ուզենայի խաբել, ելք չէի՞ գտնի վիճակից...

— Դե, տես,— հառաչեց մայրիկը,— եթե քո այդ ըմբշամարտիկ տղան չկատարի գրաֆիկը, եթե հաճախորդներից

թեկուզ մի բողոք ստանանք…

Զմեռ պապ Պորտուգալովը նախասենյակում վերցրեց պարկը, շալակն առավ, հրաժեշտ տվեց մայրիկին ու դուռը շրխկացնելով գնաց:

Եվ այստեղ պարզվեց, որ Զմեռ պապ Պորտուգալովը Կատյուշային ոչինչ չի նվիրել, մոռացել է: Խոսքով ընկել՝ մոռացել է:

— Ա՛յ քեզ սրիկա,— ողջ հոգով զայրացավ մայրիկը,— ես նրան ընդառաջեցի, իսկ նա: Չի ամաչել՝ նեղացրել է երեխային: Դեռ կտեսնի, արդեն կտեսնի:

Իսկ Կատյուշան այլևս չկարողացավ արցունքները պահել: Դրանք այնքան շատ էին, ու նա բարձրաձայն լաց եղավ, կարծես իր հետ պատահել էր սարսափելի մի բան, կարծես տանը մեռնում էր կամ արդեն մեռել էր ինչ-որ մեկը:

Մայրիկը սկսեց նրան համոզել՝ ոչինչ չօգնեց:

Մայրիկը նրան նստեցրեց ծնկներին, սկսեց շոյել, սկսեց համբուրել՝ ոչինչ չօգնեց:

Կատյուշային թվում էր, թե ինքը փոքրիկ-փոքրիկ է, ինչպիսին եղել է առաջ, կենդանի կյանքի պստիկ ու խղճալի մի բուռ, փոքր՝ նույնիսկ այն փաթեթներից, որոնցով իսկական Զմեռ պապերը երեխաներին նվերներ են տանում:

Կարծես այդպիսի ցելոֆանե փաթեթում իրեն նետել են մութ պարկի մեջ, որտեղից անպայման կմոռանան հանել, կըմոռանան նվիրել որևէ մեկին:

Եվ ահա նա լալիս է բարձր-բարձր, որ լսեն, որ չմոռանան, բայց փրկության հույսը փոքր էր, համարյա չկար:

Կատյուշան ինքն էլ սարսափելու չափ վախենում էր իր լացից, նրան թվում էր, թե լալիս է աշխարհի այն բոլոր մարդկանց փոխարեն, որոնք այս պահին չեն կարող չլացել: Մինչ այդ նա չէ՞ որ երբեք չէր մտածել, ոչինչ չէր զգացել ու ոչինչ չէր իմացել մեկ ուրիշի փոխարեն: Միայն՝ իր փոխարեն, փոքրիկ աղջնակի, որ չէր կռահում, որ ինքը մարդ է, մեկը, որը մտածում էր, թե ինքը փոքրիկ աղջնակ է և՝ ուրիշ ոչինչ:

Բայց այս պահին իմացավ…

— Դե, ի՞նչ ես անում, մի՞թե այդպես կարելի է,— հարցնում էր Կատյուշային մայրիկը: Ու ինքն էլ հեկեկաց:— Պետք չէ այդպես, պետք չէ: Վաղը չէ մյուս օրը ես քեզ և՛ երկու, և՛ երեք ձմեռպապի խաղալիք կբերեմ… Պետք չէ: Պետք չէ:

Իջևանի շրջանի Գոշ գյուղում է գտնվում Հայաստանի 12—13-րդ դարերի ճարտարապետական հանրահայտ հուշարձանային համալիրներից մեկը՝ Գոշավանքը: Նրա հիմնադրումն ու հետագա ծաղկումը անխզելիորեն կապված են միջնադարյան հայ մշակույթի խոշորագույն գործիչ, մատենագիր, գիտնական, գրող, մանկավարժ, օրենսգիր Մխիթար Գոշի անվան հետ:

Երկար տարիներ տարբեր վայրերում ուսանելուց, բազմակողմանի կրթություն և գիտելիքների հարուստ պաշար ձեռք բերելուց հետո, Գոշը, ի վերջո. գալիս-հաստատվում է Կայան գավառի Գետիկի վանքում: Գոշը այստեղ հիմնում է մի դպրոց, որը շատ շուտով մեծ հեղինակություն է ձեռք բերում: Սակայն վրա հասած աղետաբեր երկրաշարժը կործանում է ամեն ինչ: «Ուժեղ խախտվեց նաև Գետիկի եկեղեցին, որ վերստին նորոգելու հնար չկար…»,— գրում է Կ. Գանձակեցին: Եվ ահա, Գոշը, վանքի միաբանության, ինչպես նաև շրջապատի բընակիչների հեռանալը հարազատ վայրերից կասեցնելու նպատակով, ավերված վանքից ոչ հեռու, «Տանձուտի ձոր» կոչվող վայրում, Արծրունի Քուրդ իշխանի և Իվանե Զաքարյանի աջակցությամբ 1188 թվականին նախաձեռնում է նոր վանքի հիմնադրումը, այն կոչելով Նոր Գետիկի վանք: 1213 թվականից, այսինքն՝ Գոշի մահվանից հետո, այն վերանվանվում է Գոշավանք:

Համալիրի առաջին շինությունը վարպետ Մխիթարի կառուցած ս. Գրիգոր Լուսավորիչ փայտաշեն եկեղեցին էր, որի համար էլ նա ստացել էր «Հյուսն» մականունը: 1191 թվականին եկեղեցին քանդում են, և նույն Մխիթարը սկսում է «կոփածո վեմերով, գեղեցկաշեն արվեստով երկնանման գմբեթաձև եկեղեցու հիմքը գծել, որ տեսնողներին հիացմունք էր պատճառում» (Կիրակոս Գանձակեցի): 1196 թվականին մեծ շուքով կատարում են եկեղեցու բացման տոնահանդեսի արարողությունը՝ մկրտելով ս. Աստվածածին անունով: Այն դառնում է ներկայիս հուշարձանախմբի ամենահին կառույցը, որի շուրջն էլ համախմբվում են համալիրի հետագա շինությունները՝ բոլորն էլ քարաշեն: Եկեղեցին քառանկյունի հատակագծով գմբեթակիր շինություն է: Ունի երկու դուռ՝ հյուսիսային և արևմտյան, վերջինը եկեղեցին կապում է գավթի

# ԳՈՇԱՎԱՆՔ

Լուսանկարը՝ ՎԱՀԱՆ ՔՈՉԱՐԻ

հետ: Այն կառուցվել է 1200—1203 թվականներին նույն Մխիթարի կողմից և պատկանում է քառասյուն գավիթների տիպին: Սյուները կապող կամարաշարի վրա ընկած է թաղակապ ծածկը, որի կենտրոնում գտնվում է երդիկը: Լուսավորության համար ունի նաև փոքրիկ լուսամուտներ: Հատակն ամբողջությամբ ծածկված է տապանաքարերով, որոնցից շատերն ունեն արձանագրություններ: Ս. Աստվածածին եկեղեցու հարավային կողմում գտնվում է նույնատիպ, սակայն ըստ չափերի ավելի փոքր, 1208 թվականին կառուցված ս. Գրիգոր եկեղեցին, որը Մխիթար Հյուսնի շուրջ քառորդ դար տևած անխոնջ աշխատանքի վերջին արդյունքն է: Հուշարձանախմբի մնացած շինությունները կառուցվել են Մխիթար Գոշից հետո՝ նրա աշակերտների առաջնորդության տարիներին: 1237—1241 թըվականներին գավթի հարավային կողմին կից կառուցվում է ս. Գրիգոր Լուսավորիչ միանավ, երկթեք տանիքով փոքրիկ եկեղեցին: Արևմտյան մուտքի երկու կողմերում կանգնեցված են հայկական քանդակագործության գլուխգործոցներից համարվող, վարպետ Պողոսի՝ 1291 թվականին կերտած անզուգական խաչքարերը (մուտքի աջ կողմի խաչքարն այժմ գտնվում է Հայաստանի պատմության թանգարանում), որոնք հիրավի տաղանդավոր քարգործի բազալտե «ասեղնագործության» արդյունքն են: Գավթից դեպի հարավ-արևմուտք գտնվում է Սեղանատունը՝ խոշոր, անմշակ քարերից կառուցված: Այն ուղղանկյունաձև, բավականին ընդարձակ մի շինություն է, որը վկայում է վանքի միաբանության մար-

դաշատ լինելու մասին: Տաճիքը եղել է փայտածածկ և չի պահպանվել: Սեղանատանն արևելյան կողմից կցված է գրատուն-զանգակատունը: Գրատունը 1241 թվականին կառուցել է Մարտիրոսը, իսկ 50 տարի անց, 1291 թվականին Զաքիոս և Գրիգոր եղբայրները գրատան վրա ավելացրել են նաև զանգակատունը:

Գլխավոր հուշարձանախմբից անջատ, մոտ 200 մետր դեպի հարավ մի փոքր բարձունքի վրա գտնվում է հայկական ճարտարապետության եզակի կառույցներից մեկը՝ ս. Գևորգ եկեղեցին: Խորանարդաձև, երկխորան, առանց ճակտոնների գմբեթակիր շինություն է: Հեղինակները Խաչատուր և Բարսեղ եղբայրներն են (1254 թ.): Եկեղեցուց դեպի հարավ-արևմուտք գտնվում է մատուռը, որտեղ, ըստ ավանդության, թաղված է Մխիթար Գոշը: Մատուռից ոչ հեռու վարպետ Պողոսի գերեզմանն է:

Անգնահատելի է Գետիկ-Գոշավանքի դերը՝ որպես 12—13-րդ դարերի Հայաստանի ամենահզոր կրթօջախներից ու մշակութային կենտրոններից մեկը: Բարձր կարգի դպրոցի համբավը տարածվել էր ամենուր: Երկրի ամենահեռավոր անկյուններից Գոշի մոտ ուսումնառության էին գալիս նույնիսկ կրթված վարդապետները: Դպրոցն ունեցել է իրավաբանական թեքում: Դասավանդել են նաև փիլիսոփայություն, աստվածաբանություն, ճարտարապետություն, հայոց և օտար լեզուներ, գրչության արվեստ, նկարչություն, երաժշտություն և այլն: Իրենց սիրելի ուսուցչի մոտ աշակերտել են Թորոսը, Վանական Վարդապետը, Կիրակոս Գանձակեցին, Վարդան Արևելցին, որոնք հետագայում դարձան հայտնի մատենագիրներ և իրենց հերթին տարբեր վայրերում հիմնադրեցին դպրոցներ: Այստեղ են գործել նաև Վարդան Այգեկցին, Հովհաննես Արմանեցին, որոշ ժամանակ երաժշտություն է դասավանդել Խաչատուր Տարոնեցին: Ընդհանրապես Գոշավանքի դպրոցը միջնադարյան Հայաստանի մյուս կրթօջախներից առանձնանում էր իր ուսուցչական կազմի բարձր մակարդակով, դասավանդվող առարկաների բազմազանությամբ և երևելի շրջանավարտներով: Իր ժամանակների համար նշանակալից երևույթ էր նաև այստեղ տարվող անվարձ ուսուցումը:

Վանքը ունեցել է նաև հարուստ գրադարան: Գրվել, թարգմանվել, ընդօրինակվել ու նկարազարդվել են բազմաթիվ գրքեր ու ձեռագրեր, որոնց մի չնչին մասըն է միայն հասել մեզ և այժմ պահվում է Երևանի Մ. Մաշտոցի անվան Մատենադարանում: Դրանք այսօր լույս են սփռում տվյալ ժամանակաշրջանի ոչ միայն հոգևոր, այլև աշխարհիկ կյանքի պատկերացումների վրա:

Գոշավանքում ծնունդ առած առաջնակարգ աշխատությունները, անկասկած, Մխիթար Գոշի «Դատաստանագիրքն» ու «Առակներն» են: «Դատաստանագիրքն» սկսվել է գրվել 1184 թվականին՝ Խաչենի Վախթանգ իշխանի և Աղվանից Ստեփանոս Եպիսկոպոսի խնդրանքով: Հետագայում այն անընդհատ փոփոխվել է, լրացվել, կատարելագործվել: Միջնադարում լույս տեսած այդ օրենքների ժողովածուն բաժանվել է հոգևոր և աշխարհիկ կանոնների: Ըստ ժողովածուի՝ օրենքի առաջ պատասխանատու էին բոլորը: Փաստորեն մինչև Գոշը հայ իրականության մեջ աշխարհիկ օրենսգիրք չի եղել: Այդ պատճառով էլ «Դատաստանագիրքը» բացառիկ նշանակություն է ունեցել միջնադարյան հայ իրավագիտության ասպարեզում: Այն թարգմանվել է ղփչաղերեն, վրացերեն, լատիներեն, ռուսերեն, լեհերեն: Նրանով են առաջնորդվել նաև հայկական գաղթօջախներում:

Իրենցից անգնահատելի արժեք են ներկայացնում Գոշի թվով 190-ի հասնող առակները:

Գոշի մահվանից հետո էլ դեռ երկար ժամանակ Գոշավանքը շարունակում էր իր լիարյուն գործունեությունը: Սակայն 13-րդ դարի վերջերից այն աստիճանաբար սկսում է թուլանալ և ի վերջո ամայանում՝ թողնելով միջնադարյան հայ արվեստի և գիտության հիանալի նմուշներ:

Գոշավանքը մեզ էր հասել խարխուլ վիճակում: 1958—63 թվականներին այստեղ կատարվեցին մեծ ծավալների հասնող վերականգնման աշխատանքներ: 1972 թվականին Գոշավանքում բացվեց Երկրագիտական թանգարան, իսկ 1977—78 թվականներին բարեկարգվեց վանքի ողջ շրջապատը:

Այսօր Գոշավանքը դարձել է մի համր պատմիչ, որը դեպի իրեն է ձգում հազարավոր զբոսաշրջիկների աշխարհի ամենատարբեր անկյուններից:

ՌՈՒԲԵՆ ՎԱՐԴԱՆՅԱՆ




**ՌԱՖԱՅԵԼ ԻՇԽԱՆՅԱՆ**
բանասիրական գիտությունների դոկտոր, պրոֆեսոր


ԶՐՈՒՅՑ ԵՐԵՍՈՒՆՈՒԹԵՐՈՐԴ

# Տիրան՝ թագավոր Մեծ Հայքի

Վաչե Մամիկոնյանի մահից և 338-ի պատերազմից հետո մահացավ Խոսրով Կոտակ թագավորը։ Նրան տարան և թաղեցին Դարանաղյաց գավառի Անի ամրոցում՝ հայոց թագավորների հինավուրց գերեզմանոցում։

Դրանից հետո Վրթանես կաթողիկոսը գումարեց հոգևորականների և նախարարների ժողով, որտեղ որոշվեց Անդովկ Սյունու ղեկավարությամբ պատգամավորություն ուղարկել Կոստանդնուպոլիս մի տարի առաջ Հռոմի կայսր դարձած Կոստանդիոսին շնորհավորելու համար։ Այս դեսպանությունը նորընծա կայսրից օգնություն է խնդրում Հայաստանի քաղաքական վիճակը ամրապնդելու և Պարսկաստանի ոտնձգություններից երկիրը պաշտպանելու համար։ Սկսվել էր հայերի անվերապահ կողմնորոշումը դեպի Եվրոպա՝ ընդդեմ իրենց ասիացի ոչ քրիստոնյա հարևանների։ Այդ կողմնորոշումը և հավատը, որ քրիստոնյա ազգերը պիտի օգնեն Հայաստանին, հետագայում գնալով ուժեղացավ, հայերին թշնամացրեց իրենց հարևանների հետ և մեծ վնասներ տվեց հայ ժողովրդին։

Հիշենք, որ Հռոմեական կայսրության արևելյան մասը՝ Բալկանյան թերակղզուց մինչև Փոքր Ասիայի կեսերը, հունախոս էր։ 330 թվականից, երբ կայսրության մայրաքաղաք դարձավ Կոստանդնուպոլիսը, հունարենը նաև կայսրության արքունիքի լեզուն էր։ Այդ է պատճառը, որ հայ պատմիչները այդ ժամանակներից սկսած Հռոմեական կայսրությունն անվանում էին Հունաստան, Հունաց երկիր, Բյուզանդիա (այս վերջին անունը ծագել է Կոստանդնուպոլսի հին՝ Բյուզանդիոն անունից)։

338 թվականին հայոց գահ բարձրացավ Խոսրով Կոտակի որդի Տիրանը։ Թեև քրիստոնեությունը Հայաստանում մոտ 300 տարվա պատմություն ուներ և արդեն երեք տասնամյակ էր, ինչ համազգային կրոն էր հռչակվել, բայց հեթանոսությունը ամուր գոյատևում էր հայերի մեջ։ Այն հայերը, որոնք քրիստոնեությունն ընդունել էին կամավոր կամ որոնց ծնողները, պապերը քրիստոնյա էին դարձել Հայաստան եկած առաքյալների, ապա այլ քարոզիչների վկայություններով և իրենք ծնվել էին քրիստոնյա ընտանիքներում, տարբեր էին Տրդատ Մեծի հրամանով քրիստոնեություն ընդունած հարյուր հազարավոր հայերից։ Հայաստանի քրիստոնյա համայնքները, որոնք ստեղծվել էին դեռևս առաջին, երկրորդ դարերում, 4-րդ դարում արդեն չէին հալածվում, ազատ էին իրենց կրոնը դավանելու։ Նրանք գիտեին, թե ինչ է քրիստոնեությունը և կարդում էին Նոր կտակարանի առանձին գրքեր՝ հունարեն կամ ասորերեն։ Հնարավոր է նաև, որ այդ գրքերից մի քանիսը՝ Ավետարաններից մեկը կամ երկուսը, Պողոս առաքյալի նամակները և այլն, հայերեն թարգմանված լինեին (թերևս, հունատառ)։ Մինչդեռ Տրդատի և Գրիգոր Լուսավորչի կողմից զանգվածաբար քրիստոնյա հայտարարված հարյուր հազարավոր հայեր անունով էին քրիստոնյա, նրանց մեծ մասը շարունակում էր իր հեթանոսական կյանքը։

Ահա թե ինչ է գրում այդ հայերի մասին Փավստոս Բուզանդը.

«Որովհետև վաղուց ի վեր, երբ նրանք քրիստոնյա անունն ստացան՝ այդ

կրոնը հանձն առաւ հարկադրաբար, իբրև մի մարդկային մոլորություն, առանց ջերմեռանդ հավատի: Քրիստոնեական կրոնն ընդունեցին ոչ գիտակցաբար, ոչ հույսով ու հավատով, ինչպես հարկն է: Միայն քչերը, որոնք փոքր ի շատե ծանոթ էին հունական կամ ասորի գրագիտության, մասամբ հասկանում էին այդ կրոնը: Իսկ որոնք գրագիտության արվեստից զուրկ էին, այսինքն՝ ժողովրդի՝ նախարարների ու շինականների խառնիճաղանջ բազմությունը,— եթե ուսուցիչները նստելով գիշեր-ցերեկ ամպերի նըման ուսումը ինչպես հորդ անձրև նըրանց վրա հոսեցնեին, նրանցից ոչ մեկը ոչ մի խոսք, ոչ կես խոսք, ոչ մի բան, ոչ մի նշույլ իրենց լսածներից չէին կարող մտքում պահել կամ հասկանալ»:

Ապա Փավստոսն ավելացնում է. «Նըրանք... տհաս մտքերով խարխափում էին պարսավելի գործերի, հին հեթանոսական սովորությունների մեջ... Նրանք սիրում էին իրենց երգերը, առասպելները, վիպասանությունները, դրանց հանդեպ փութեռանդ էին, դրանց հավատում էին, դրանց մեջ հարատևում»:

Հայոց եկեղեցին շարունակում էր ամեն ջանք թափել հայ ժողովրդի մեջ ամրացնելու քրիստոնեական կրոնը:

Տիրան թագավորը հակված էր դեպի հեթանոսությունը և հայոց քրիստոնեական եկեղեցու նկատմամբ հարգանք չուներ: 341 թ. վախճանվեց հայոց կաթողիկոս Վրթանեսը: Թագավորը իրեն ազատ զգաց և սկսեց խրախուսել հեթանոսությունը:

Վրթանեսի փոխարեն հայոց կաթողիկոս դարձավ նրա պատանի որդի՝ Հուսիկը, որը ջերմեռանդ քրիստոնյա էր: Նրա մասին Փավստոսը այսպես է գրում. «Նա տարիքով դեռ պատանի էր, բայց առույգ, բարձր հասակով, դեմքի սքանչելի գեղեցկությամբ և չքնաղ, որի նմանը երկրում ուրիշ տեղ չէր գտնվում»:

Հուսիկ կաթողիկոսի և Տիրան թագավորի միջև հակառակություն սկիզբ առավ: Կաթողիկոսը հանդիմանում էր թագավորին, նախարարներին, իշխաններին հեթանոսական վարք ու բարքի՝ շվայտ կյանքի, հափշտակողության, անառակության, սպանություններ անելու ու նման բաների համար:

«Եվ ահա մի անգամ,—գրում է Փավստոսը,— տարեկան տոնի մի օր Տիրան թագավորը մյուս ավագների հետ եկավ, որ եկեղեցի մտնի, իսկ նա (Հուսիկ կաթողիկոսը) դեմ դուրս գալով ասաց. «Արժանի չես. ինչո՞ւ ես եկել, ներս մի՛



Վարազդատ թագավոր

գնա»: Ուստի, նրան ծեծեցին հենց այնտեղ՝ եկեղեցու մեջ: «Աստծու քահանայապետ սուրբ և երանելի պատանի Հուսիկը բրածեծ լինելով, ջախջախված, խոշտանգված, կիսամեռ գցվեց, մնաց»: Հուսիկը երեք տարի կաթողիկոս լինելուց հետո վախճանվում է: Դա 341 թվականն էր: Նրա երկվորյակ զավակները՝ Պապն ու Աթանագինեսը, կրոնից հեռու կանգնած պատանիներ էին և չէին կարող կաթողիկոս դառնալ: Ուստի կաթողիկոս դարձրին Դանիել անունով մի ասորի հոգևորականի, որը շարունակեց թագավորին և մյուս մեծամեծներին հանդիմանել շվայտ կյանքի համար: Տիրան թագավորի հրամանով Դանիելին պարանով խեղդեցին:

Դանիելի կաթողիկոս դառնալով խախտվեց հայոց կաթողիկոսության ժառանգական բնույթը: Մինչ այդ հայ բոլոր կաթողիկոսները Գրիգոր Լուսավորիչի տոհմից էին: Մեծ Հայքի կաթողիկոսության ժառանգական բնույթը վերականգնվեց 353 թ., երբ Հուսիկի թոռ Ներսեսը դարձավ կաթողիկոս:

Դանիելի մահից հետո 348 թ. կաթողիկոս են նշանակում Տարոն գավառից մի քահանայի՝ Փառեն անունով: Փառենը հայ նախարարներ Վասակ Մամիկոնյանի, Մեհենդակ Ռշտունու, Անդովկ Սյունու և Արշավիր Կամսարականի ուղեկցությամբ գնում է Գամիրքի (Կապադովկիայի) Կեսարիա քաղաքը և այնտեղի արքեպիսկոպոսի կողմից ձեռնադրվում է հայոց կաթողիկոս: Փառենը վախից այլևս չէր հանդիմանում թագավորին և մյուսներին հեթանոսական շվայտ կյանք վարելու համար: Փառենը մոտ չորս տարի եղավ կաթողիկոս: Նրա մահից հետո կաթողիկոսական աթոռը գրավեց Շահակ անունով մի հոգևորական:

Տիրան թագավորը ոչ միայն եկեղեցու, այլև անհնազանդ նախարարների դեմ էլ էր պայքարում: Նա ավելի մեծ իրավունք տվեց Հայր Մարդպետին, որն իր տոհմով ներքինի էր հայոց Արշակունիների գահին և պայքարում էր հանուն միասնական Հայաստանի, հայոց կենտրոնախույս ուժերի դեմ: Տիրան թագավորի ցուցումով Հայր Մարդպետի մարդիկ դաժան դատաստան տեսան Արծրունի և Ռշտունի նախարարական տների հետ, որոնց Տիրանը ոչ առանց հիմքի կասկածում էր անջատողական ծրագրեր ունենալու մեջ: Սրանց հողերը թագավորը տվեց Հայր Մարդպետին ու նրա նախարարական տանը:

Մամիկոնյան իշխանները, Տիրան թագավորի դաժանություններից զայրացած՝ իրենց զորքով հեռացան Տայք, որը նրանց պապենական աշխարհն էր: Մամիկոնյանների ձեռքին էր հայոց սպարապետության պաշտոնը: Հեռանալով Տայք՝ նրանք թագավորին զրկեցին սպարապետական հենարանից և հայոց զորքի մի մասից: Մի քանի այլ նախարարներ նույնպես դժգոհ էին Տիրանից:

Այն ժամանակ հայոց նախարարների և մյուս ավագների, իշխանների մեջ երկու կուսակցություն կար. մեկը հակված էր դեպի Բյուզանդիան (Հ ռ ո մ ե ա կ ա ն կ ա յ ս ր ո ւ թյունը), մյուսը՝ դեպի Պարսկաստանը: Տիրան թագավորը այդ կուսակցություններից ոչ մեկին չէր հարում: Նա ինքնուրույն քաղաքականություն էր վարում. չէր հավատում ո՛չ Բյուզանդիային, ո՛չ Պարսկաստանին: Եվ դաժան էր վարվում հայոց կենտրոնախույս իշխանության դեմ դավող բոլոր նախարարների հետ՝ անկախ նրանց կուսակցական պատկանելությունից:

Հռոմը (Բյուզանդիան) դրանից դժգոհ էր, և Տիրանի որդի Տրդատին, որին Կոստանդնուպոլսում հույները որպես պատանդ էին պահում, կայսրի հրամանով սպանեցին: Տիրանը ստիպված ձևացնում է, թե ուզում է բարեկամանալ Հռոմի հետ: Նա հաշտվում է բյուզանդասեր (հռոմեասեր) Մամիկոնյան իշխանների հետ, ջանում է նաև բարի հարաբերություններ հաստատել բյուզանդասեր կուսակցությանը պատկանող մյուս նախարարների հետ: Սա էլ զայրացնում է պարսից Շապուհ II թագավորին:

344 թ. նոր պատերազմ է սկսվում Պարսկաստանի և Բյուզանդիայի միջև: Շապուհի զորքերը մտնելով Հայաստան՝ գերի են վերցնում Տիրան թագավորին, տանում են Պարսկաստան և աչքերը հանում:

Ապա պարսիկները Հռոմից պարտություն են կրում: Տիրան թագավորն ազատվում է, գալիս հայրենիք, բայց կուրացած այլևս չէր կարող թագավորել: Նա հաստատվում է Կաուշ (այժմ՝ Կոշ) ավանի իր կալվածքում (Աշտարակի մոտ):

345 թ. հայոց գահ է բարձրանում Տիրանի որդի Արշակը:

(շարունակելի)

Մարիոնետների թատրոնը տիկնիկային թատրոնի տեսակ է, սկսել է զարգանալ 18—19-րդ դարերում: Թատրոնի առանձնահատկությունն այն է, որ տիկնիկները «խաղում են» իսկական, փոքրիկ բեմում և շարժվում թելերի միջոցով:

Խորհրդային Միությունում նման թատրոններ կան Լենինգրադ, Թբիլիսի և Երևան քաղաքներում: Լենինգրադի մարիոնետների թատրոնը միայն մանուկների համար է: Թբիլիսինը՝ միայն մեծահասակների, իսկ ահա, Երևանի նորաբաց մարիոնետների թատրոնը՝ թե՛ մանուկների համար է և թե՛ մեծահասակների:

Երևանում Մարիոնետների թատրոնը սկսել է գործել վերջերս: Առաջին ներկայացումը տեղի է ունեցել 1987 թ. սեպտեմբերի 19-ին, հին տիկնիկային շենքում՝ Լենինի պողոտայի № 43 շենքի առաջին հարկում: Ցավոք, նոր թատրոնը գործել է սկսել բավականին անցանկալի պայմաններում, շենքը՝ իբր վերանորոգված, բայց անմխիթար վիճակում է, ազդագրեր և ահասարակ թատրոն հիշեցնող որևէ լուրջ նշան չկա, բացի թատրոնի անվանումը նշող փոքրիկ ցուցանակից, որն իր հերթին ոչ այնքան ճաշակով ձևավորված լինելու պատճառով շրջակա ցուցանակների նման մնում է համարյա աննկատ: Միայն աչալուրջ ու պրպտող աչքը կարող է հայտնաբերել, որ ներսում թատրոն է գործում: Բնականաբար, այդ մեղմ ասած՝ անփութությունը պատճառ է դառնում, որ առանց այն էլ փոքրիկ թատրոնը հանդիսատեսի պակաս ունենա: Սրանք հարցեր են, որոնցով պետք է մտահոգվեն համապատասխան վերադաս մարմինները:

— Մարիոնետների թատրոնի ստեղծման անհրաժեշտությունը Հայաստանում վաղուց կար,— ասում է թատրոնի գլխավոր ռեժիսոր Մնացական Փիլոյանը,— անգամ Ե. Չարենցը իր նամակներից մեկում նշում է, որ այս արվեստը յուրահատուկ ձև ունի և նրա միջոցով հնարավոր է հասնել մեծ թատերական բարձունքների: Ես,— շարունակում է ընկեր Փիլոյանը,— 13 տարի աշխատել եմ Երևանի Հովհ. Թումանյանի անվան տիկնիկային թատրոնում և միշտ մտածել եմ մարիոնետների թատրոնի հիմնադրման մասին:

Ծանոթանալով Սաթենիկ Թոփուզյանի հետ, որը կինոյի տանը բացել էր իր ծղոտե տիկնիկների հերթական ցուցահանդեսը, Մնացական Փիլոյանը ձեռնարկում է Հայաստանում մարիոնետների պետական թատրոն հիմնելու գործը, որն ահա իրականացվել է՝ թեև մեծ ջանքերի ու համառության գնով:

Թատրոնը փոքր կազմ ունի, բարդ տեխնիկային տիրապետելու համար դերասաններից պահանջվում է ուժերի գերլարում, ճկունություն, խիստ զգայուն փոխկապվածություն: Աշխատատար պրոցես է նաև տիկնիկների ստեղծումը, պահանջվում է վարպետություն, նվիրվածություն՝ կավն ու փայտը շարժման կերպար դարձնելու համար: Մարիոնետների թատրոնը չպետք է շփոթել տիկնիկային թատրոնի հետ, այս արվեստն ունի իր յուրօրինակ դժվարությունները: Եվ քանի որ այս թատրոնը մեր հանրապետության սահ-



Արմոն երկու կրիա էր նկարել նկարչական տետրի ամբողջ էջի վրա: Կրիաներից մեկը գլուխն ու ոտքերը հանել էր պատյանից, թվում էր՝ հիմա կշարժվի, մյուսը՝ վախեցած կծկվել էր զրահի ներսում, միայն սև ճանկերն էին կիսատ-պըռատ երևում: Ընկեր Տիրացվյանը նկարը վերցրեց, Արմոյին կանչեց գրատախտակի մոտ:

— Կանգնիր դեմքով դեպի դասարանը, գլուխդ՝ բարձր:

Արմոն կատարեց նրա հրամանը, բայց գլուխը չբարձրացրեց:

— Այ տղա, ինչո՞ւ ես պատկերդ դաջել ճերմակ թղթին,— հետո դարձավ մեզ՝ ցույց տալով նկարները,— տեսնո՞ւմ եք որքան է իրեն նման: Գույնը՝ իրենը, ճանկերը՝ իրենը...

Արմոն սև էր սովորականից ավելի, ձեռքերը՝ ճաքճքված, ինչպես մեզանից շատերինը, ոտքի մատները դուրս էին պրծել ծակուծուկ տրեխների արանքից, տաբատի կարկատանները այնքան շատ էին ու բազմազան, որ կարծես խունացած քարտեզ լինեին:

Ընկեր Տիրացվյանն ասում էր ու ասում, առանց խնայելու, առանց նայելու արցունքակալած նրա աչքերին:

— Բա էս լեռնոտ աշխարհում ուրիշ բան չտեսա՞ր կրիաներից բացի: Դու գեղեցկությունից իսկի գաղափար չունե՞ս... Դե հիմա այս նկարին նայեցեք...

Նա իմ տետրը բարձրացրեց, ցուցադրեց: Ես ճերմակ էջը դարձրել էի մայիսյան դաշտ. կանաչ խոտեր, թփեր, ծիլեր, վառ կարմիր կակաչներ, դեղին զանգակներ: Արևի ճառագայթներով ողողել էի դաշտը, մի փոքրիկ աղջնակ գունավոր չթե զգեստով վազում էր թիթեռների հետևից: Չէի մոռացել առու բացել և ուռենի տնկել հենց դաշտի կենտրոնում, հետո կապույտ անմոռուկներով զարդարել էի առվի ափերը, ուռենու խոնարհված ճյուղերին ծիտիկներ նկարել գունավոր կրծքով ու թևերով:

Ընկեր Տիրացվյանը երկուսիս նկարածները կողք-կողքի դրեց և սկսեց ինձ գովել.

— Կյանքին այսպիսի հայացքով պետք է նայել. ցուրտ ձմռան մեջ վառ գարուն տեսնել, գարնան շունչ, գարնան բուրմունք, գարնանային տրամադրություն, թիթեռներ, կակաչներ, կանաչ ու արև... Իսկ դո՞ւ,— նորից դարձավ Արմոյին, իսկ նա սևացած ձեռնափերով աչքերն էր սըր-




մաններում նոր երևույթ է, դեռևս փորձ չկա, անհրաժեշտ է ստեղծել նաև կից ստուդիա, որպեսզի գործը դառնա շարունակական:

Առայժմ պատրաստի ներկայացումներն են՝ «Արագիլը և Խրտվիլակը», «Երեք խոզուկները»՝ մանուկների համար և Ե. Չարենցի «Կապկազ-թամաշան»՝ մեծահասակների համար, որոնք դիտելով համոզվում ես, որ թատրոնը ճիշտ ճանապարհ է ընտրել:

Ուշագրավ երևույթ է Ե. Չարենցի «Կապկազ-թամաշան»: Ինչպես հուշում են մեծ բանաստեղծի արխիվային նյութերը, Չարենցը ցանկություն է ունեցել Երևանում տեսնել մարիոնետի թատրոն և իր «Կապկազ-թամաշան» նախատեսել է այդ տեսակի թատրոնի համար: Այս ներկայացումը հետաքրքիր է, սիմվոլիկ նախաբանով ու ավարտամասով:

Թատրոնի հիմնական ուղղությունը պետք է լինի սոցիալական սատիրան. նախատեսված է Սվիֆտի «Գուլիվերի ճանապարհորդությունը», Նիկ. Գոլի և Ալ. Վեսիլովի «Ծեկ ծաղրածուն», Էքզյուպերիի «Փոքրիկ իշխանը», Ա. Չեխովի «Հիվանդասենյակ № 6» գործերը, իսկ հայ հեղինակներից առայժմ միայն Աղասի Այվազյանն է պիես ներկայացրել՝ «Լոքո և Մովսես» վերնագրով: Այնպես որ, թատրոնը կարիք ունի նաև հեղինակների:

Մարիոնետի թատրոնը իր պրեմիերաների համար հետաքրքիր որոշում ունի: Եթե պիեսը մեծահասակների համար է՝ պրեմիերան կատարվում է ծերանոցում, իսկ եթե մանուկների համար՝ մանկատներում:

Որպես նոր, ցանկալի երևույթ, Մարիոնետների թատրոնը կարիք ունի նախ և առաջ ուշիմ ու հոգատար վերաբերմունքի՝ քանի որ այն անհատները, որոնք իրենց մեջ ուժ և ոգևորություն են գտնում նոր և շնորհակալ գործ անելու, պետք է բարի ու կամեցող դեմքերի հանդիպեն: Բարի երթ նոր նորեկին:

ԼԻԼԻԹ ԱՐԶՈՒՄԱՆՅԱՆ

Լուսանկարները՝
ՋԱՎԵՆ ԽԱՉԻԿՅԱՆԻ

ԱՇԽԷՆ ԱԲԱՋՅԱՆ




Նկարը՝ ԿԱՐԵՆ ՍՄԲԱՏՅԱՆԻ

քում:

Դասերից հետո ոտքս կախեցի, որ նրա հետ դուրս գամ, չնայած զգում էի, որ ինքը չի ուզում: Հետո երբ ճանապարհին մենակ մնացինք, ես կամաց հարցրի.

— Դու կրիաներին սիրո՞ւմ ես:

— Ոչ: Կրիաները սիրելու բա՞ն են, որ սիրեմ,— չարությամբ պատասխանեց, հետո լռեցինք: Իսկ երբ հասանք իրենց տան մոտ (մենք հարևաններ էինք), ա-

սաց մի տեսակ չուզելով, բառերը ծամելով,— կրիաները ամենատխուր կենդանիներն են, ես խղճում եմ նրանց... Դու չես խղճո՞ւմ....

— Կտա՞ս քո կրիաներն ինձ:

Տանը ես երկար նայում էի Արմոյի կրիաներին, մտածում նրա ասածի վրա՝ կրիաները ամենատխուր կենդանիներն են:

Իմ դպրոցական ընկեր Արմոն զգացել ու հասկացել էր, որ աշխարհում կան տխուր և ուրախ կենդանիներ, իսկ ես՝ ոչ: Մենք ընդամենը հինգերորդ դասարանում էինք: Ես գերազանցիկ էի, բոլորից լավ էի խնդիրներ լուծում, նկարում էի բոլորից լավ, երազում բոլորից շատ, բայց երբեք չէի մտածել տխրության և ուրախության մասին, ինչ մնաց՝ կենդանիների տրամադրությունը հարցնել...

Այդ օրվանից սկսեցի մտածել:

Իմ մայիսյան դաշտը նսեմացավ աչքիս, թեև ընկեր Տիրացվյանը գովելով գովում էր, գունավոր մատիտները՝ նույնպես: Արմոն միայն սև մատիտ էր օգտագործել. զրահի վանդակները իրարից բաժանել էր սևի մուգ և բաց երանգներով, իսկ ճանկերը, գլուխն ու ոտքերը ավելի մուգ՝ ասես վերցրել էր անաստղ ու անլուսին գիշերներից:

Ես մի ուրիշ նկարչական տետր ունեի, որի մեջ նկարում էի այն ամենը, ինչ դուր էր գալիս ինձ: Առաջին էջում երկու կխտար էի նկարել: Այդպիսի կխտարներ տեսել էի մեր սարի անտառում: Միկիչ բիձան մեզ տանում էր Տանձուտ: Ճանապարհին կանգ առանք, եզներն արձակեց, որ արածեն, մենք էլ երեխաներով, մեզ հետ նաև մեծեր կային, քաշվեցինք մի լայնաբուն ու լայնասաղարթ ծփենու տակ հանգստանալու: Անտառում դեռ խոտը դալար էր ու խիտ, թփերը՝ անանցանելի: Միամիտ նստել ու մեր ունեցած-չունեցած ուտելիքներն էինք կանաչներին փռում, մեկ էլ ծառի հետևի թփուտներից երկու կխտար՝ մեկը փոքր, մյուսը՝ մեծ, երևի մայր ու ձագ, առաջներս կանգնեցին: Միանգամից լեզուներս կապվեց, իրար նայեցինք, կխտարներին ու ժպտացինք: Բոլորս ժպտում էինք, ինձ թվաց՝ կխտարներն էլ են ժպտում: Առաջինը Միկիչ բիձան ուշքի եկավ, երևի նրանից էր, որ նա կանգնած էր:

— Ղազար, հրացանը:

Ղազարը իմ որսորդ հորեղբայրն էր, պատերազմից վերադարձած մի ջահել զինվոր, իսկույն հրացանը վերցրեց, բայց չբարձրացրեց, չփորձեց կրակել, շարունակում էր նայել ու ժպտալ: Չգիտեմ որքան տևեց այդ հմայիչ տեսարանը, կրխտարները նույն հանգստությամբ գլուխները շրջեցին ու անհետացան խիտ թփուտների մեջ: Մենք էլ հանգստացած շունչ քաշեցինք ու ժպտալով նայեցինք իրար: Միկիչ բիձան նախատեց հորեղբայր Ղազարին.

— Դեռ պարծենում ես, թե խրամատներից դուրս չես եկել, պատերազմի առաջին օրվանից մինչև վերջին օրը ավտոմատը կրծքիդ կրակել ես: Հիմա երկու կխտար չկարողացար ոտքից գցել:

Հորեղբայր Ղազարը թույլ բռնել ու ժպտում էր, ժպտալով էլ պատասխանեց.

— Նրանից է, որ թշնամին ու կխտարը իրարից ջոկում եմ: Հետո երեխաների մեջ... հը՞... ոնց կլինի, բիձա ջան:

— Ճիշտ ես,— Միկիչ բիձան ամաչելով հանձնվեց:

Ես այս կխտարներն էի նկարել: Նկարել էի նաև ծփենին, մեզ՝ ծփենու ստվերում նստած, հորեղբայր Ղազարին՝ հրացանը ծնկների վրա, կիսանստած, Միկիչ բիձային՝ կանգնած: Ինչքան չարչարվեցի, այս երկու տեսարանները չկարողացա մի էջի վրա տեղավորել: Մտածեցի, մտածեցի, գծեցի ու ջնջեցի, վերջը կըխտարներին առանձնացրի:

Հաջորդ նկարս հաստաբուն կաղնին կտցահարող փայտփորիկ էր: Հայտնի է, որ գարնան գալուստը առաջինը կկուն է ազդարարում: Բայց ձնհալը չընկած, կըկվից շատ առաջ փայտփորիկն է հայտնըվում անտառում և միալար կտկտոցով ծառերի բները մաքրազարդում վնասատու միջատներից, ասես նախապատրաստում գալիք գարնան: Ինձ միշտ թվում էր, թե մեր հսկա անտառում միայն մի փայտփորիկ և մի կկու կա: Զարմանում էի, թե այդքան ծառերի կեղևները ոնց է մի փայտփորիկը իր կտցով, որքան էլ ամուր, վաղ առավոտից մինչև մութն ընկնելը միալար կտցահարում: Կամ մի կկու առավոտից երեկո կու-կու կանչում: Եվ նկարել էի իմ կարծիքով միակ փայտփորիկին՝ կաղնու բնին ամուր կառչած: Կկվին էլ դրել էի հաճարենու ամենաբարձր ճյուղին, բերանը մինչև վերջ բաց: Նույն հաճարենու միջին ճյուղերին ագռավի բունն էի նկարել: Ագռավը կանգնել էր բնի մեջ, զարմացած նայում էր,

թե ինչպես կկուն կտցով իր մեռած ձագին ուզում է գցել իր՝ ագռավի ոտքի տակ: Այս պատկերը նկարելիս նկատի ունեի ժողովրդական այն խոսքը, թե կկուն սեփական բուն չի ունենում, իսկ երբ ձագը սատկում է, տանում է ագռավին տալիս, ասելով՝ կռավան, դու լացել սիրում ես, առ լացի, ես ժամանակ չունեմ՝ գնամ իմ բանին: Նկարի տակ այդպես էլ գրել էի:

Հաջորդ նկարներիս նյութը գյուղական կյանքից էի վերցրել: Ամռան շոգ օրեր են: Դպրոցականների օղակը հնձած դաշտերում հասկ է հավաքում: Ցածր դասարանցիներս այդ օղակի մեջ չէինք մտնում, բայց քնից արթնանում ու վազում էինք դաշտերը: Հենց հայտնվում էինք, օղակավար Սեդան կարգադրում էր.

— Ջուր բերեք:

Ջուրը մոխրատանձենու ստվերում, խոտով ծածկած գինու կլոր տակառի մեջ էր: Մի անգամ ես ու Անոն ջրամանները վերցրինք ու դեպի տակառը շարժվեցինք՝ վազելով, թռչելով, ամանները չխչխկացնելով: Մեկ էլ Անոն կանգնեց ու սառավ, ես էլ՝ կողքին: Ծաքճքված հողակոշտի մեջ քնած օձ էինք տեսել: Ինչ օձ... բաց կապույտ, ոնց որ երկնքի լազուրում թաթախած, թափանցիկ, գեղեցիկ, երկտակված, գլուխը թեք, ասես հիրհում էր անխռով, անուշ քնով: Հիացմունքից քարացել, ո՛չ խոսում էինք, ո՛չ շարժվում: Այդքան գեղեցիկ օձ առաջին անգամ էինք տեսնում: Երևի երկար մնացինք այդ դիրքով՝ մոռացած ջուրն էլ, ծարավներին էլ, ամռան շոգն էլ: Ուշքի եկանք Վերգուշի փնթփնթոցներից.

— Ի՞նչ եք մորեխների հետևից ընկել...

Խոսքը բերանում մնաց, ձեռքով սաստեցինք, չթողինք շարունակել:

— Օ՜ձ... ես հիմա կսպանեմ,— Վերգուշը կռացավ ու քար վերցրեց:

— Էդ քարով քո գլուխը կջարդեմ, դեն գցիր,— կարմրատակած գոռացի:

Վերգուշը զարմացավ իմ բորբոքվելու վրա, քարը անձայն գցեց, իսկ Անոն շարունակում էր հիանալ, ուշադրություն չըդարձնելով մեզ վրա, կամաց, ասես վախենալով, որ օձը կարթնանա, շշնջաց.

— Տեսնո՞ւմ ես՝ ինչ սիրուն է, իսկի օձի նման չի:

Վերգուշն էլ մեզ հետ խռնարհվեց, ու շարունակեցինք երեքով նայել: Վերգուշը ձեռքը դանդաղորեն դեպի օձի երկտակված մեջքը տարավ:

— Ուզում եմ շոյել...

Նա ամենից անվախն էր մեր ընկերուհիների մեջ: Երբ գնում էինք Քարհանքի գլուխը թրթնջուկ ու մորի հավաքելու, երբ թրթնջուկի խոնավ թփի տակ օձ էինք տեսնում, մենք լեղապատառ փախչում էինք, իսկ Վերգուշը քար կամ փայտ էր վերցնում և վրա քշում օձին:

Ես նկարել էի կապույտ օձին այնպես, ինչպես տեսանք հողի բացված ճեղքի մեջ, քնած՝ խաղաղ ու անվրդով, ես ու Անոն նայում էինք, իսկ Վերգուշը ձեռքը երկարել, ուզում էր շոյել:

Իմ նկարչական այդ տետրի մեջ ուրիշ շատ պատկերներ կային: Չկային միայն կրիաներ՝ աշխարհի այդ ամենատխուր ու ամենախեղճ կենդանիները: Իմ մեղքը երանի միայն այդ լիներ:

Երբ գարունը գալիս է, հայտնվում են նրանք Քարհանքի գլխի ցաքուտներում, անթիվ ու անհաշիվ, տարբեր չափերի, ձվից նոր ելած փափուկ զրահներով, որ դեռ շարժվել չեն կարողանում, ավելի երիտասարդներ, որոնց եթե քայլելու պահին մոտենում ես, անմիջապես կանգնում ու գլուխները ներս են քաշում վախեցած: Միայն դրա համար չէ, որ Արմոն նրանց խեղճ էր անվանում: Եթե կրիային պառկեցնում ես մեջքի վրա, այդպես էլ մընում է, սեփական ուժերով երբեք չի կարող շրջվել:

Մի անգամ երեկոյան կողմ ցաքուտներում թափառելուց հոգնած, ուզում էինք տուն դառնալ, Վերգուշը մեկ էլ թե՝

— Եկեք կրիաներին շուռ տանք մեջքի վրա:

Նրա խելքին ընկանք և ինչքան կրիա հանդիպեց, իրար կողքի, մեջքի վրա շարեցինք: Այդպես էլ թողինք ու գնացինք: Գիշերը անձրև եկավ: Առավոտյան անձրևը շարունակվում էր: Արթնացա ու միտքըս թռավ կրիաների մոտ՝ տեսնես ի՞նչ եղան:

Հիմա նայում եմ Արմոյի նկարներին, ու շրջված կրիաներն են նախատինքով դեմս հառնում: Նրանք ոչ մի տեղ չէին կարող փախչել, չէին կարող պատսպարվել անձրևից: Նրանք կրկնակի խեղճացած՝ մտնելու էին իրենց կրծքի ու մեջքի սապատների մեջ ու այդպես մնալու, մինչև երջանիկ պատահականությամբ, անենք գտնվեր Արմոյի նման մեկն ու իր բարի ձեռքով շտկեր մեր չար ձեռքով շրջած նրանց ճակատագիրը: Երանի գտնվեր...




Տատս պատմում, էր որ ձմռան ամիսներին իրենց ընտանիքում երեխաներից միայն մեկն էր դպրոց գնում՝ տանը եղած միակ վերարկուի ու մի զույգ կոշիկի պատճառով:

Ընկերուհիս, որ երիտասարդ ուսուցչուհի է, բողոքում էր՝ աշակերտներս ինձանից լավ են հագնվում, ինձ էլ արհամարհանքով չափում են՝ մի սրա հագածին նայեք:

Հարևանիս տղան ձմեռվա կեսին դիդմամբ խուզել էր մազերը՝ դպրոցում սանրվածքի վերաբերյալ խոսակցություններին վերջ տալու համար:

Մեր ընտանիքում առավոտն սկսվում է նույն պարբերականությամբ. քույրիկս որ արթնանում է մի մշտական մտահոգությամբ՝ այսօր ինչ հագնեմ:

— Համազգեստ, էլ ի՞նչ,— խորհուրդ եմ տալիս ես,— հո ցուցահանդես չի՝ օրը մի քան ես հագնում:

— Ես այդ անճաշակությունը հագնողը չեմ,— արագ պայուսակն է խոթում «Բուրդայի» նոր համարը:— Ի՞նչ եք բոլորդ կպել համազգեստից: Սովորելու հետ համազգեստն ի՞նչ կապ ունի:

Փորձում եմ բացատրել, որ աշակերտներից ոմանք հնարավորություն ունեն լավ հագնվելու, մյուսները՝ չունեն, որ չունեցողի մոտ լավ չհագնվելու պատճառով թերարժեքություն է առաջանում, որ...

— Այդ ժամանակները անցել են, կարևորը ոչ թե թանկարժեք, այլ ճաշակով հագնվելն է,— քույրիկս ձեռքը թափ է տալիս իմ հետամնացության վրա,— ուսուցիչները իրենց սպառել են, դասագրքի մի քանի տողից դուրս բան չունեն մեզ տալու, դրա համար էլ անընդհատ կպչում են մեր հագուստ-կապուստին: Մոռանում են, որ հասուն մարդիկ ենք, հագնվելն էլ է ինքնաարտահայտման ձև:

Դպրոցական համազգեստի մասին ունեցած վերաբերմունքի մեջ քույրիկս միակը չէ:

— Միատեսակ համազգեստների մեջ մենք կորցնում ենք մեր ինքնատիպությունը, դառնում ենք ինկուբատորից դուրս եկած անհաջող արտադրանքի նման մի բան,— ասում է Բագրատ Սարգսյանը:

— Միատեսակ համազգեստ կրում են բանտարկյալները ու զինվորականները, դպրոցականները ինչո՞ւ պիտի միատեսակ հագնվեն: Չեմ կարծում, թե միատեսակ համազգեստ կրելով մեր կարգապահությունը բարձրանում է,— ավելացնում է Վաչե Խաչիկյանը:

Զրուցակիցներս ֆիզմաթ դպրոցի աշակերտներն են, շատ կարդացած, խելացի տղաներ, ու ես երբեք չեմ հավատա, որ միատեսակ համազգեստի մեջ նրանք կարող են կորցնել իրենց ինքնատիպությունը:

**Կարծիքների սարդոստայն:— «Դպրոցական համազգեստը**

**դասարանից տալիս է միապաղաղ տեսք: Իմ կարծիքով, աշակերտն ինքը պետք է որոշի՝ ինչ հագնել: Չէ՞ որ համազգեստն աշակերտն է հագնում և ոչ թե դիրեկտորը կամ դաստիարակը»:**
ՀԱՅԿ ԳԱԲՐԻԵԼՅԱՆ, № 51 դպրոց, 9-րդ դաս.

**«Չեմ կարծում, թե միատեսակ ոչնչով չի օգնում աշակերտին լավ մտածել, նույնիսկ իր գործությամբ ու միապաղաղությամբ խանգարում է մտածելուն»:**
ԱՐՄԱՆ ՍԱՐԳՍՅԱՆ, № 1 դպրոց, 9-րդ դաս.

**«Չեմ կարծում, թե միատեսակ հագուստը կարգապահության նախադրյալ է: Թե՛ աշակերտները, թե՛ ուսուցիչները պիտի հագնվելու ազատություն ունենան: Աղջիկները կարող են անգամ տաբատներով դպրոց գալ, և՛ տաք է, և՛ հարմարավետ, միայն թե հագուստը շատ ճչան ու խայտաբղետ չլինի, որ ավելորդ ուշադրություն չգրավի: Ասենք, ճչանն ու անճաշակն էլ ավելի հեշտ կհղկվի և կվերանա դպրոցական տարիքում, երբ աշակերտի մոտ դեռ նոր-նոր են ձևավորվում ճաշակի, չափի, գեղեցիկի, պատշաճի զգացողությունները»:**
ԼԻԱ ՄԻՐԶՈՅԱՆ, Երևանի № 51 դպրոցի ռուսաց լեզվի և գրականության ուսուցչուհի

Երևանի մի քանի դպրոցների 6-ից 10-րդ դասարաններում կատարած հարցումը դպրոցական համազգեստի վերաբերյալ հետաքրքիր արդյունքներ տվեց: Հարցման տվյալների համաձայն՝ այսօրվա դպրոցական համազգեստին դեմ են բոլորը՝ և՛ աշակերտները, և՛ ուսուցիչները: Աշակերտների 60 տոկոսը պատրաստ է հաճույքով կրել դպրոցական համազգեստ, եթե այն նորաձև ու հարմար լինի: Մնացած 40 տոկոսը դեմ է միատեսակ համազգեստին և առաջարկում է հագնվելու ազատություն տալ դպրոցականին (ասենք, որ այս 40 տոկոսը կազմում են հիմնականում անգլիական թեքումով, ռուսական և քաղաքի կենտրոնական մասի հայկական դպրոցների աշակերտները, հատկապես նրանք, որ նյութապես ավելի ապահովված ընտանիքների երեխաներ են):

**Կարծիքների սարդոստայն:— «Դպրոցական համազգեստով է ընդգծվում (արտաքնապես) աշակերտների իրավահավասարությունը, գոնե առերևույթ համահարթվում են ընտանիքների սոցիալ-տնտեսական դրության տարբերությունները, և ստեղծվում է համակեցության բարվոք մթնոլորտ»:**
ԼՅՈՒԲԱ ՄՈՒՐԱԴՅԱՆ, № 56 դպրոցի հայոց լեզվի և գրականության ուսուցչուհի

**Անհնար է, որ բոլոր աշակերտների ծնողները ունենան հավասար նյութական հնարավորություններ: Մի ընտանիք կարող է մեծ նյութական հնարավորություններ ունենալ, մյուսը՝ համեմատաբար փոքր: Այդ պատճառով էլ որոշ աշակերտներ կարող են թանկարժեք հագուստներ կրել, մյուսները՝ ոչ: Արդյունքում կառաջանա «հագնվողների» և «չհագնվողների» ներքին շերտավորում»:**
ՎԱՐԴԱՆ ԵՐԱՆՈՍՅԱՆ, № 1 դպրոց, 7-րդ դաս.

Իսկ որ համազգեստն անճաշակ է ու անհարմար՝ դրանում երկու կարծիք լինել չի կարող: Այսօրվա մեր դպրոցական համազգեստը գյուղացի Համբոյի տրեխների նման տասնամյակների պատմություն ունի. ժամանակները փոխվել են, ճաշակներն ու նորաձևությունը՝ նույնպես, տարիներ առաջ այդ համազգեստով դպրոց գնացողներն այսօր նույն հագուստով դպրոց են ճանապարհում իրենց թոռներին:

**Կարծիքների սարդոստայն:— «Չգիտեմ ինչու մեր նորաբարները բոլորովին չեն մտածում դպրոցական համազգեստի մասին: Բոլորս էլ արդեն հոգնել ենք այդ հնաոճ ու խղճուկ հագուստից, որը անգամ մեր մայրերն ու տատերն են հագել»:**

**«Խոսում ենք ապագայի դպրոցի մասին՝ առանց մտածելու, որ այդ շքեղ դասարաններում նստելու ենք մռայլ և անշուք համազգեստով: Ամեն ինչ վերակառուցվում է, նորանում, իսկ դպրոցական համազգե՞ստը...**

**Գոգնոցներին, ինձ թվում է, պետք է փոխարինեն կոստյումները: Գոգնոցը կապում են տանը, շրջազգեստի վրայից, որպեսզի այն չկեղտոտվի, բայց չէ՞ որ մենք դպրոցում ենք, այնպիսի գործ չենք անում, որ կեղտոտվենք: Ինձ թվում է, որ նորաձև ու գեղեցիկ կոստյումը լիովին կփոխարինի գոգնոցին»:**

ՍՈՒՍԱՆՆԱ ՀՈՎՀԱՆՆԻՍՅԱՆ, № 139 դպրոց, 7-րդ դաս.

**«Երբ մեր դասարանի աղջիկները հագնում են սև կամ շագանակագույն համազգեստ, վրայից էլ՝ սև գոգնոց, ամբողջ դպրոցը նմանվում է թաղման թափորի»:**

ԱՐՄԵՆ և ԳՅՈՒԼԲԵՆԿ ՏԱԳԵՍՅԱՆՆԵՐ, Նոր Խարբերդի № 1 միջն. դպրոցի 4-րդ դասարանի աշակերտներ

Հագուստը կրելու ցանկությունը պայմանավորված է ճաշակով, նորաձև և հարմար լինելով: Կարող են, չէ՞, մեր նորաձևության տան աշխատակիցները հանելի ու ինքնատիպ համազգեստ ստեղծել: Հայ դպրոցականի համազգեստ՝ ազգային նկարագրի երանգն ու ոճը պահպանող: Կարող են, եթե հնարավորություն ընձեռվի:

Այսօր մեր ժողկրթության նախարարությունը իր ազգային դպրոցի աշակերտին կրթում է միայն Մոսկվայում ընդունված ծրագրով: ՍՍՀՄ ժողկրթության նախարարության պաշտոնյան, որ երևի թե կարգին պատկերացում էլ չունի հայ ժողովրդի մասին, ինքն է որոշում, թե քանի ժամ է անհրաժեշտ հայ մանուկին՝ իր ժողովրդի լեզուն ու պատմությունը սովորելու համար: Այսպես մենք կկորցնենք ազգային դպրոցը, ազգային դպրոց չունենալով՝ կկորցնենք մեր ազգային նկարագիրը: Լավ, ազգային դպրոցն ի՞նչ կապ ունի դպրոցական համազգեստի հետ, կհարցնեք դուք: Մեծ: Իմ կարծիքով, մեր, ինչպես և ՍՍՀՄ մյուս հանրապետությունների դպրոցականները պետք է տարբերվեն իրենց համազգեստով: Լավ կլինի, եթե յուրաքանչյուր դպրոց, յուրաքանչյուր դասարան (նպատակահարմար է՝ տարրականից բարձր) իր համազգեստի որևէ տարրով տարբերվի մյուսներից: Ասենք, 5 բ առօրեական անվանումից բացի դասարանն ունենա իր անունը, օրինակի համար. Նարեկացու անվան դասարան: Աշակերտներն ավելի խորությամբ ուսումնասիրեն Նարեկացու կյանքը, ապրած ժամանակաշրջանը, ստեղծագործությունը, հագուստի վրա ասեղնագործված լինի Նարեկացու տաղերից որևէ տող:

Երևանի № 51 դպրոցի երիտասարդ ուսուցչուհիներից մեկը՝ Անահիտ Հովսեփյանը ասում է, որ ազգային դպրոցական համազգեստներ կարող են կարել աշակերտուհիներն իրենք, կարող են ասեղնագործել օձիքներն ու թեզանիքները՝ տնարարության դասի ժամանակ:

Անահիտի դասասենյակում վարագույրի վրա հայոց այբուբենի տառերն են: Ինքն է ասեղնագործել՝ հայոց լեզվի և գրականության ուսուցչուհին, հետո էլ օրեր շարունակ նստել է աշակերտների կողքին՝ սովորեցնելով ասեղն այնպես բռնել, որ Մեծարենցի ու Տերյանի դասերից մի նախշ էլ հայոց դպրոցի աշակերտուհին այս սպիտակ կտորի վրա թողնի՝ ակացիայի ծաղկի նման:

Եռագույն նշանները կրծքներիս փակցրած շրջում ենք, բա այդ եռագույնի մի նշխարն էլ մեր համազգեստի վրա չասեղնագործվի՞, օտարատառ մակագրությամբ հագուստի փոխարեն մեր ձեռքով կարածը չհագնե՞նք, հայոց դպրոցի աշակերտ:

**Կարծիքների սարդոստայն:— «Լավ կլիներ, որ մենք՝ աշակերտներս, որոշեինք դպրոցական համազգեստի ձևը, յուրաքանչյուր դպրոց կամ դասարան՝ իրենը: Հետո էլ, ծնողների և ուսուցիչների օգնությամբ կարեինք դրանք»:**

ՎԱՐԴՈՒՀԻ ՉԻԼԻՆԳԱՐՅԱՆ, 10-րդ դասարան

**«Աշակերտական համազգեստը պետք է համապատասխանի դպրոցականի տարիքային առանձնահատկություններին: Տարրական դպրոցի աշակերտական հագուստը պետք է տարբերվի ոչ լրիվ միջնակարգ դպրոցի հագուստից, վերջինս էլ՝ միջնակարգինից: Համազգեստը պետք է համապատասխանի աշակերտի տարիքին՝ գույների ճիշտ ընտրությամբ»:**

ԼՅՈՒԲԱ ՄՈՒՐԱԴՅԱՆ, № 56 դպրոցի ուսուցչուհի

**«Ինձ շատ է դուր գալիս էստոնացի դպրոցականների համազգեստը՝ գեղեցիկ ու ինքնատիպ: Լավ կլիներ, որ Հայաստանի դպրոցականները նույնպես իրենց ազգային համազգեստն ունենային՝ երկիրն ու ժողովուրդը բնութագրող որևէ խորհրդանշանով»:**

ՍՈՆԱ ՀՈՎՍԵՓՅԱՆ, 10-րդ դաս.

**«Իբրև գաղտնիք ասենք, որ մեր դպրոցի տնարարության ուսուցչուհին՝ Սյուզան Թենեքեչյանը, արդեն համապատասխան մոդել է նախատեսել դպրոցական համազգեստի համար: Ցածր դասարանցիների հագուստը կտարբերվի բարձր դասարանցիների համազգեստից թե՛ ձևով (գլխարկներ կունենան՝ շոգից ու ցրտից պաշտպանվելու նպատակով), թե՛ որակով (փոքրերին ավելի փափուկ կտորից կկարվի): Հագուստն անպայման ազգային տարազի կնիքը կունենա՝ գուլպայի վրա զարդանախշ, որևէ այլ մասունք: Համազգեստի պարտադիր մասը կլինի պայուսակը, տարբեր դարերի հայկական պայուսակների նման, ավելի հարմարավետ ու գեղեցիկ»:**

Երևանի № 183 դպրոցի մի խումբ աշակերտներ

Ծնողը դպրոց էր եկել ոչ թե աշակերտի վարքի կամ առաջադիմության մասին հետաքրքրվելու, չէ, պարզապես շատ էր ուզում տեսնել ուսուցչուհու նոր մատանին: Արդեն մի քանի օր էր աղջիկը դպրոցից տուն էր գալիս ու մորը պատմում այդ զարմանահրաշ մատանու մասին՝ «Գիտե՞ս ինչ գեղեցիկ է», «Երևի շատ թանկ արժի: Որ մեծանամ, ինձ էլ կգնե՞ս դրանից»: Առանց այդ էլ այս նոր ուսուցչուհու արդուզարդի մասին խոսակցությունները վերջերս չեն լռում իրենց տանը: Չէ, միայն իր աղջիկը չէ այդքան զարմացած, մի քանի օր առաջ աղջկա դասընկերուհիներն էին իրենց տանը, միասին քննարկում էին ուսուցչուհու նոր կոշիկներն ու ականջօղերը:

**Կարծիքների սարդոստայն.— «Ուսուցչուհին ինքը պիտի օրինակ հանդիսանա աշակերտի համար, ոչ միայն գիտելիքներով, այլև հագուստով, արդուզարդով, կեցվածքով»:**

ՆԱԻՐԱ ՀԱՄԲԱՐՁՈՒՄՅԱՆ, № 56 դպրոցի 9-րդ դաս.

Աշակերտներին մենք պարտադրում ենք դպրոցական համազգեստ հագնել (թեպետ ընդունում ենք համազգեստի գործությունը), աշակերտին վայել (՞) սանրվածք ունենալ (չեմ կարծում, թե որևէ հայ դպրոցական պանկի դառնա) ու պարտադրելուց առաջ երբեմն մոռանում ենք հայելու մեջ նայել ինքներս մեզ:

Ես էլի ուզում եմ հիշատակել № 51 դպրոցի երիտասարդ ուսուցչուհուն: Անահիտն ամեն դասի համար իր գույնն ունի: Հա, մի տարակուսեք, անգամ հագուստների առումով: Ճիշտ էր նկատել նրա 10-րդ դասարանցի աշակերտը. «Չարենց ենք անցնում, դրա համար էլ վերջերս միշտ կապույտ, ոսկի ու մանուշակագույն եք հագնում, չէ՞»:

Դպրոցը սոսկ դասագրքերից քաղված աքսիոմների ուսուցման համար չէ, դըպրոցը չեզոք սեռի միատիպ աշակերտներ պատրաստելու համար չէ: Դպրոցն այն վայրն է, որը գեղեցիկի, ճաշակի, նրբակրթության դասեր պիտի տա: Ուրեմն եկեք մոռանանք պարտադրելու սովորույթի մասին ու օգնենք մեր աշակերտներին գտնելու իրենց համազգեստը, որը և՛ նորաձև լինի, և՛ հարմարավետ, և՛ ազգային դպրոցի խորհրդանշանը դառնա:

ԳՈՀԱՐ ՕՀԱՆՅԱՆ

ՀԱՄՈ ՀԱՐՅԱՆ

## Տան քոթուկը

Մի որբ տղա մեծացավ,
Տուն ու տեղի տեր դարձավ,
Բայց, բանում էր, հա բանում,
Տան մեկն երկուս չէր անում,
Ասես մի աչք, չարք մի չար,
Թարսում էր գործն անպատճառ...

Հա բանում էր, հա բանում,
Բայց մեկն երկուս չէր անում...

Վերջը ընկեր ու դրկից
Ասին՝ լսիր, այ կտրիճ,
Տանըդ, ախըր, ծեր չկա,
Ծեր պապիկ կամ հեր չկա.
Քեզ հովանի ձեռք է պետք,
Մեծի խոհեմ խելք է պետք:

Թե հեր չկա, ծեր չկա,
Օջախումդ խեր չկա...

Այ թե ինչ է հարկավոր...
Իսկ թե չկան, ինչ կա որ.
Գնա անտառ, ման եկ, ման,
Մի կոճղ գտիր անպայման,
Գտիր մի կոճղ, առ բեր տուն,
Բեր դիր ձեր տան անկյունում:

Ծեր լինի թող, հին քոթուկ,
Անշունչ թեկուզ և անշուք...

Գնաց տղան և իսկույն
Գտավ մի կոճղ, բերեց տուն՝
Պապանման ինչ-որ բան.
Անձեռ-անոտ-անբերան,
Կուզ ու չոր կոճղ, բայց տես որ
Որբին շատ էր հարկավոր...

Կոճղից էլ պա՛պ, քոթուկ-պա՛պ,
Զարմանալի չէ՞ անչափ...

Մի զարմացեք դուք բնավ.
Մի գործ բռներ փատ, թե լավ,
Մի խոչ բուսներ թե ճամփին,
Հարցում կաներ կոճղ-պապին,
Եվ կոճղ-պապը՝ փուչ-խոռոչ,
«Հա» էր ասում կամ թե «ոչ»...

Այսպես էլ պա՛պ, պապ-քոթո՛ւկ...
Լավ մտածեք հապա դուք...

ԳԱՅԱՆԵ ԲԵԳԻՅԱՆ

## Լսոճիկիս

Մազերը բոսոր ու պղնձագույն,
Քիթը պեպենոտ՝
Ասես թիթեռը ձվեր է դրել:
Սև-սև աչքերից նայում են մի զույգ
Անզուսպ այծիկներ:

Ու կեսգիշերին,
Երբ քնաթաթախ
Ջոկում-գտնում է անկողինը իմ,
Ու գաղտնագողի հանգչում գրկիս մեջ,
Բերկրանքից
Քունս դառնում է թռչուն:

## Աչքերի լեզուն

Իմ շեկլիկ-շեկլիկ, պարծենկոտ տղան՝
Աչքերում մի-մի արև թաքցրած՝
Ուզում է շեղել բարկությունը իմ:

Այնպիսի սուտ է հնարել հիմա,
Որ քիչ է մնում ինքս էլ հավատամ
Այս հինգ տարեկան Պոլոզ Մուկուչին:

Եղբայր, այս տղան
Հունից կհանի յոթ իմաստունի
Եվ դեռ ուզում է, որ իր աչքերում
Ճշտի փոխարեն կարդամ իր սուտը:

Ու լաց է լինում,
Թե ախըր ինչո՞ւ մայրիկը գիտի
Աչքերի լեզուն:





ՎԱՀԱՆ ՏԵՐ-ՂԱԶԱՐՅԱՆ

# ԵԳԻՊՏԱԿԱՆ ՍՖԻՆՔՍԻ ԵՐԱԶԸ

Նկարը՝ ՄԻՀՐԱՆ ՔԵՇՕՂԼՅԱՆԻ

Նեղոսից այն կողմ ընկած եգիպտական մեծ անապատի շիկացած ավազների մեջ իր առյուծաճանկերը խրած ավազաքարե սֆինքսը, որի անունն Ամենեմհեթ էր, իր ստեղծագործման առաջին իսկ օրից գիտակցություն ուներ: Արքաների հովտում շատ կային ավազաքարե սֆինքսներ, սակայն Ամենեմհեթ սֆինքսն էր միայն օժտված գիտակցությամբ:

Ամենօրյա հիշողությունները նրան տեղափոխում էին անցյալի փառավոր ու տխրահուշ ժամանակները, նորօրյա կանչերն ու զանգերը Նրան հետ էին բերում ներկա, և այսքան մեծ, գրեթե հավերժության հասնող ժամանակ էր շարժվում Ամենեմհեթ սֆինքսի ավազաքարե անշարժության խորքում: Աշխարհը նա դիտել էր վերևից, քանի որ վիթխարի էր ըստեղծված: Արքաների հովիտը նա հիշում էր այն ժամանակներից, երբ բուր-

գերի բոլոր ննջեցյալները կա՛մ չէին ծնվել դեռ, կա՛մ թափառում էին իր շուրջն ու մանր մեծագործություններ որոնում: Թե ովքեր էին նրանք, Ամենեմհեթ սֆինքսը չգիտեր: Գիտեր միայն, որ նրանց փարավոն էին կոչում և նրանց ձեռքին էր իշխանությունը: Իշխանությունը մի ծիծաղելի բառ կլիներ սֆինքսի համար, եթե նա իմանար, թե ինչ է ծիծաղը: Մինչդեռ արվեստը, որ բուրգերի, տաճարների ու սֆինքսների կերպարանքով ստեղծում էին ստրուկների բազմաթիվ սերունդներ, հասկանալի էր նրան, խոր ակնածանք էր առաջացնում նրա անշարժ, արևից շիկացած հոգում:

Ամենեմհեթն առաջին սֆինքսն էր Արքաների հովտում: Հետո սկսեցին նրա կերպարանքով ստեղծել մյուսներին: Այն ստրուկը, որ ստեղծեց Ամենեմհեթ սֆինքսին, հեռացավ Նեղոսի հոսանքով և բազում տարիներ անց միայն վերադարձավ Արքաների հովիտ, սակայն՝ Լիբիական մեծ անապատի ճանապարհով: Սֆինքսը հիշում էր ստրուկին: Նրա անունը Տոտ էր: Նա էր Եգիպտոսում ստեղծել այն ամենը, ինչ հարազատ էր Ամենեմհեթ սֆինքսի ավազաքարե հոգուն: Տոտն աստված դարձավ ավելի շուտ, քան Լիբիական անապատի ճանապարհով կվերադառնար Արքաների հովիտ: Ստրուկները նրան աստված դարձրին: Նա այդպես էլ չիմացավ, որ ինքն աստված է:

Ամենեմհեթ սֆինքսի աչքի առաջ կանգնեցին պատկերներ անցյալի: Ահա, իր վիթխարի առյուծաճանկի մոտ կանգնած է նա՝ ստրուկ Տոտը և ապշահար նայում է իրեն՝ սֆինքսին: Հետո՝ մնացած բազմաթիվ սֆինքսներին ու դարձյալ շրջվում դեպի Ամենեմհեթը: Տոտ աստվածը ծեր է արդեն: Նրա կիսամերկ մարմինը թալկացել է, և մաշկը մագաղաթ է դարձել:

— Ես եմ քեզ կերտել,— շշնջում է աստվածն ապշահար:

Եվ Ամենեմհեթ սֆինքսին անծանոթ է մարդկային կերտել բառը: Նա միայն ստեղծել-ը գիտե:

— Դու առաջինն ես,— գոռում է Տոտ աստվածը խզված ձայնով:

Եվ Ամենեմհեթ սֆինքսին առաջին-ն է անծանոթ: Նա չի հաշվել:

—Ժամանակն է,—հառաչում է ստրուկ Տոտը:

«Ժամանա՞կ»,— մտածում է սֆինքսը:

Եվ ստրուկն իր խեղճ եղունգներով փորում է Ամենեմհեթ սֆինքսի առյուծաճանկի տակ, փորում է ավազը և պառկում ճանկի մեջ:

Հետո սամումները նոր ավազներ բերին...

Երբ Նեղոսի հովտի վերևում երևում է լուսինը, Ամենեմհեթ սֆինքսը երազներ է տեսնում իրեն անծանոթ ժամանակի մասին: Իբր վազում է իր առյուծաթաթերի վրա, շրջում հրաշալի գլուխն, ու անկիրթ դեմքը զարմանքի արտահայտություն է ստանում, երբ տեսնում է Արքաների հովտի մյուս կեսը, հետո շարունակում է ծանր վազել, վիթխարի թաթերը խրելով ավազների մեջ, տարածում է իր արծվաթևերը վիթխարի ու կտրվում անապատից, բարձրանում վեր, հանդարտ, ծանր սավառնում է անապատի վրայով, թռչում է ծովի վրայով, հետո լեռների և ահա մի ուրիշ գետի հովտում տեսնում է մի տարօրինակ սֆինքս: Դա Նեբրովթն է՝ Միջագետքի մեծ ցլամարդը, որը նույնպես թևեր ունի, ցլի մարմին և աստծո գլուխ: Ահա նա տեսնում է հեթիթական ու հելլենական, շումերական սֆինքսներին և դրանցից բոլոր առաջիններն էլ գիտակցությամբ են օժտված: Հետո Ամենեմհեթ սֆինքսը վերադառնում է Արքաների հովիտ և դարձյալ տեսնում Տոտ ստրուկին, որն ասում է.

— Եթե ես արծվի թևեր ունենայի, մարդկային գլուխ և առյուծի ճանկեր, ես էլ կլինեի հավերժ և կլինեի մեծագույն, կլինեի առաջին ստեղծագործությունը բոլոր ժամանակների, կլինեի հավերժորեն գիտակից և կիմանայի միայն այն, ինչ հավերժը պիտի իմանա: Իսկ ինչ ժամանակավոր է, չէի հասկանա ես ու չէի մեռնի:

Հետո զարթնում է Ամենեմհեթ սֆինքսը, և քայլում է նրա կողքով անապատի առյուծը, ճախրում է բազեն ու նայում են նրան ժամանակների միջով դեմքեր մարդկային՝ սևամորթը, եգիպտացին, արաբն ու եվրոպացին, այսօրվա մարդը... Երազ է այդ բոլորը, որ հավերժություն կոչվող ակնթարթում տեսել է նա...

Եվ այդպես կանգնած է անապատի շիկացած ավազների մեջ Ամենեմհեթ սֆինքսը, առյուծաճանկի մեջ ամուր պահած իրեն ստեղծող ստրուկ Տոտ աստծո աճյունը և հայացքը հեռու... այնտեղ, ուր վերջն է վերջանում:



ԱՇՈՏ ՄԵԼՔՈՆՅԱՆ. «ԻՆՔՆԱՆԿԱՐ ԸՆՏԱՆԻՔԻ ՀԵՏ»:

Հանձնված է տպագրության 31.03.1989 թ.։ Ստորագրված է տպագրության 09.06.1989 թ.։ ՎՖ 02195։ Թուղթ՝ օֆսեթ, 70×100 1/16։ Տառատեսակը՝ Նորք։ Օֆսեթ տպագրություն, 2,92 պայմ. մամ., 3,9 հրատ. մամ.։ Տպաքանակ՝ 61312, Պատվեր՝ 504։ Գինը՝ 15 կոպեկ։

Տպագրված է ՀԿԿ Կենտկոմի հրատարակչության տպարանում, Օրջոնիկիձեի պողոտա 2։

Сдано в набор 31.03.1989 г. Подписано к печати 09.06.1989 г. Формат 70×100 1/16. ВФ 02195. Бумага офсетная. Гарнитура «норк». Офсетная печат. 2,92 усл. печ.листа. 3,0 уч.-изд. листа. Тираж 61312. Заказ 504. Цена 15 коп.

Напечатано в типографии изд-ва ЦК КП Армении, пр. Орджоникидзе, 2.

# ՊԻՈՆԵՐ

ՀԼԿԵՄ ԿԵՆՏԿՈՄԻ ԵՎ Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ԱՆՎԱՆ ՊԻՈՆԵՐԱԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅԱՆ ՀԱՆՐԱՊԵՏԱԿԱՆ ԽՈՐՀՐԴԻ ՄԱՆԿԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ:

ՀԱՍՑԵՆ՝ 375015, ԵՐԵՎԱՆ 15, ԿԱՐՄԻՐ ԲԱՆԱԿԻ ՓՈՂՈՑ № 15: ՀԵՌԱԽՈՍՆԵՐ՝ 56—32—72, 58—08—33, 56—14—96, 56—43—38:

Լույս է տեսնում 1923 թվականից



ԻՆԴԵՔՍ՝ 77806

ԳԻՆԸ՝ 15 ԿՈՊ.